Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 3-4 (23)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 3-4 (23)



«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945



Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ Ի. ՍՏԱԼԻՆ

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՆԱԽՕՐՅԱԿԻՆ

Հանդիսավոր սալյուտների անլռելի հնչյունների տակ մեր երկիրը դիմավորում է Կարմիր Բանակի՝ մեր ժողովրդի սիրելի զավակի, նրա հպարտության, նրա փառքի 27-րդ տարեդարձը: Մեկ շաբաթ է մնացել մինչև սոցիալիստական պետության պատմության այդ նշանակալից օրը, և որքան ավելի մոտենում է փետրվարի 23-ի օրը, այնքան ավելի վառ է դառնում համաժողովրդական սիրո զգացմունքների արտահայտությունը դեպի բանակը, դեպի նրա ռազմիկները, դեպի նրա մեծ կազմակերպիչ, առաջնորդ և զորավար ընկեր Ստալինը: Ամբողջ երկիրը, Սովետական Միության բոլոր ժողովուրդները Կարմիր Բանակի օրվան պատրաստվում են որպես համաժողովրդական տոնի, ռազմաճակատում տարած փառավոր հաղթանակների և թիկունքում կատարվող անձնվեր աշխատանքի սխրագործությունների տոնի:

Մեր երկիրը իր զինված ուժերի գոյության տարեդարձը չորրորդ անգամ նշելու է հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող Հայրենական պատերազմի իրադրության մեջ: 27 տարի առաջ գերմանական իմպերիալիզմի դեմ մղված ճակատամարտում ծնված մեր բանակը պատվով արդարացրեց սովետական ժողովրդ-

դի և ամբողջ առաջավոր մարդկության հույսերը: Պատերազմների մեջ այս մեծագույն պատերազմում նա կործանիչ պարտություններ պատճառեց հիտլերյան ռազմական մեքենային և ֆաշիստական Գերմանիային անողոք կերպով հրում է դեպի անդունդը:

Անցյալ տարի մեր ժողովուրդը Կարմիր Բանակի հոբելյանը տոնեց 1943—1944 թվի ձմեռային հաղթական հարձակման եռուն պահին: Անցյալ ձմեռային կամպանիայի ընթացքում Կարմիր Բանակը մեկվերացրեց գերմանացիների հզոր պաշտպանությունը Դնեպրի ամբողջ երկարությամբ՝ Ժլոբինից մինչև Խերսոն, մեծագույն հաղթանակներ տարավ աջափնյա Ուկրաինայում, Լենինգրադը ամբողջովին ազատագրեց թշնամու բլոկադայից և հրետանային բարբարոսական ռմբակոծություններից, ծավալեց օկուպանտների մասսայական վտարումը սովետական Բելոռուսիայից: Սակայն Կարմիր Բանակի առաջ այն ժամանակ դեռևս կանգնած էր սովետական հողերը գերմանական օկուպանտներից լրիվին մաքրելու խնդիրը: Այժմ այդ պատմական խնդիրը լուծված է լրիվին և ամբողջությամբ: Ներկայումս սովետական ամբողջ երկիրը տոնելու է Կարմիր Բանակի տարեդարձը:

Այս տարի սովետական ռազմիկները տարեդարձի պանծալի օրը դիմավորելու են հիտլերյան Գերմանիայի հողում մղվող ճակատամարտերում: Արևելյան Պրուսիան, Սիլեզիան, Բրանդենբուրգը, Պոմերանիան պատերազմի հրի մեջ են, նրա բոցը մոտենում է Սաքսոնիային: Մեր զորքերը գտնվում են Քյոնիգսբերգի մոտ, Օդերի Ֆրանկֆուրտի մոտ, Շտետտինի և Բեռլինի մատույցներում...

1944 թվի փետրվարի 23-ին, Կարմիր Բանակի 26-րդ տարեդարձին նվիրված հրամանում, Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինը հայտարարեց.

«Կարմիր Բանակի հաղթական հարձակումը հնարավոր դարձավ շնորհիվ սովետական մարդկանց աշ-





Կարմիր Բանակի գլխավոր շտաբի պետ, Սովետական Միության Հերոս, Սովետական Միության Մարշալ Ա. Մ. ՎԱՍԻԼԵՎՍԿԻ



Բելոռուսական 1-ին ռազմաճակատի զորքերի հրամանատար, Սովետական Միության կրկնակի Հերոս, Սովետական Միության Մարշալ Գ. Կ. ԺՈՒԿՈՎ.

խաղաղանքային նորանոր ստեղծագործությունների՝ մեր տնտեսության բոլոր ճյուղերում»։

Ընկեր Ստալինի այս գնահատականը լիովին համապատասխանում է սովետական թիկունքի նվաճումներին՝ անցած տարվա ընթացքում: Կարմիր Բանակը հենվում է ամբողջ երկրի վրա: Մեր զորքերի հաղթական երթի մեջ մենք լսում ենք Մոսկվայի ու Լենինգրադի, Ուրալի ու Սիբիրի, Դոնբասի ու Ստալինգրադի, Անդրկովկասի ու Միջին Ասիայի հզոր քայլերը...

Սովետական մարդիկ առանձնահատուկ խանդավառությամբ են աշխատում պանծալի տարեդարձին նախորդող օրերին: Չնայած ձմեռային դժվարություններին, արդյունաբերության հարյուրավոր և հազարավոր ձեռնարկություններ հաջողությամբ կատարում ու գերակատարում են իրենց արտադրական առաջադրանքները: Շատ ձեռնարկություններ արտապլանային արտադրանք են տալիս հաղթանակի ֆոնդի օգտին, այն ֆոնդի, որին ժողովուրդն անվանում է Ստալինյան: Ուրալմաշ տանկային գործարանի կոլեկտիվը ստախանովյան հերթափոխություն է հայտարարել ի պատիվ Կարմիր Բանակի 27-րդ տարեդարձի և պարտավորվել է երկամսյա ծրագիրը կատարել մինչև փետրվարի 23-ը: Ստախանովյան հերթափոխության են կանգնում Դոնբասի և Մերձմոսկովյան ածխահանքերը: Այն մոտորաշինական գործարանի կոլեկտիվը, որի դիրեկտորն է ընկ. Սոլդատովը, պարտավորվել է գերակատարել փետրվարի պլանը: Այն ավիագործարանի կոլեկտիվը, որի դիրեկտորն է ընկ. Լևինցինը, պլանից դուրս տալիս է «Յակովլև» կործանիչներ:

Մարտական տոնը նորանոր հաջողություններով է դիմավորում մեր կոլխոզային գյուղը: Հուժկու շարժում է ծավալվում 1945 թվի հաղթանակի բարձր բերքի համար: Ցանքի նախապատրաստման վճռական ժամանակաշրջանում կոլխոզային գյուղի աշխատավորները անընդհատ աշխատում են հարաճուն եռան-





Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերի հրամանատար, Սովետական Միության Հերոս, Սովետական Միության Մարշալ Ի. Ս. ԿՈՆԵՎ



Ուկրաինական 3-րդ ռազմաճակատի զորքերի հրամանատար, Սովետական Միության Հերոս, Սովետական Միության Մարշալ Ֆ. Ի. ՏՈԼԲՈՒԽԻՆ

քով: Օրեց օր ավելանում է նախապատերազմյան գլխավոր աշխատանքներն ավարտած մարզերի, երկրամասերի և ռեսպուբլիկաների թիվը: Տրակտորների աշնան-ձմեռային նորոգման պլանը օրերս կատարեց Դնեպրոպետրովսկի մարզը: Այսօր «Պրավդան» հաղորդագրություն է հրապարակում, որ տրակտորների նորոգման տարեկան պլանը ժամկետից շուտ կատարել են Դաղստանի ԱՍՍՌ-ն, Օդեսայի և Բոբրույսկի մարզերը, որ սերմֆոնդի կուտակման պլանը կատարել է Վորոնեժի մարզը: Վաղը առաջավորների թիվը էլ ավելի կշատանա:

Կարմիր Բանակի տարեդարձին նվիրված մրցության մեջ նորանոր նշանակալից հաջողություններ են ձեռք բերում աշխատանքային ճակատի հերոսները՝ ստախանովականները և հարվածայինները: Եգոր Ագարկովի օրինակով ավելի ու ավելի է ծավալվում ճակատային խոշորացված բրիգադների շարժումը: Նրանք ավելացնում են արտադրանքի թողարկումը որակյալ աշխատողների ավելի պակաս քանակով: Երկաթուղիներում ավելանում է այնպիսի ականավոր նովատորների հետևորդների թիվը, ինչպիսիք են մեքենավար Կորոբկովը և գնացքներ կազմող Կոտովը, որոնք կարողանում են ամենալավ կերպով օգտագործել տրանսպորտի տեխնիկական միջոցները:

Յուրաքանչյուր քաղաք, յուրաքանչյուր գյուղ արտադրական նվերներ է պատրաստում Կարմիր Բանակին: Սակայն բացի դրանից, մեր ժողովուրդը հիշում է, որ Կարմիր Բանակի նկատմամբ մեր ցուցաբերած հոգատարության կեսը ճակատայինների ընտանիքներին ցույց տրվող հոգատարությունն է: Այդ հոգատարությունը ամենևին էլ «կամպանիա» չէ. դա մտել է առօրեական մարդկանց կենցաղի մեջ: Կարմիր Բանակի օրվա առթիվ թիկունքի աշխատողները ձգտում են առանձնապես ընդգծել իրենց սերը դեպի Հայրենիքի պաշտպանների զավակները: Գործարանները, ֆաբրիկաները, կոլխոզները նվերներ են պատ-





Բելոռուսական 2-րդ ռազմաճակատի զորքերի հրամանատար, Սովետական Միության Հերոս, Սովետական Միության Մարշալ Կ. Կ. ՌՈԿՈՍՍՈՎՍԿԻ



Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերի հրամանատար, Սովետական Միության Մարշալ Ռ. ՅԱ. ՄԱԼԻՆՈՎՍԿԻ

...բաստում երկրներին, տներ են կազմակերպում ե-րեխաների համար: Դա սովետական հայրենասիրու-թյան վառ արտահայտություններից մեկն է:

Կարմիր Բանակի տարեդարձը մենք դիմավորում ենք Կարմիր Բանակի նորանոր հաղթանակների և դաշ-նակից երեք մեծ տերությունների ղեկավարների Ղրի-մի Կոնֆերանսի պատմական որոշումների առաջ բե-րած ընդհանուր վերելքի մթնոլորտում: Կարմիր Բա-նակի 26-րդ տարեդարձի առթիվ տրված հրամանում ընկեր Ստալինը խոսում էր հակահիտլերյան կոալի-ցիայի բանակում տարաձայնություն առաջ բերելու համար հիտլերյան պարագլուխների հուսահատական փորձերի մասին: Ընկեր Ստալինը նախատեսում էր հիտլերականների այդ մեքենայությունների ձախողու-մը, «որովհետև հակահիտլերյան կոալիցիայի հիմքն են կազմում կենսականորեն կարևոր շահերը դաշնա-կիցների, որոնք դրել են հիտլերյան Գերմանիային և նրա եվրոպական համագործակիցներին ջախջախելու խնդիրը»: Ղրիմի Կոնֆերանսը հանդիսացավ ՍՍՌՄ-ի, Անգլիայի ու ԱՄՆ-ի մարտական դաշինքի ամրապնդ-ման ամենավառ վկայությունը: Նացիստական Գեր-մանիան դատապարտված է: Արևելքից, արևմուտքից, հյուսիսից և հարավից նորանոր և էլ ավելի հզոր հարվածներ կհասցվեն Գերմանիայի վրա:

Կարմիր Բանակի հետ միասին մեր ամբողջ ժողո-վուրդը պատրաստվում է մահացու հարված հասցնե-լու հիտլերյան Գերմանիայի վրա: Սովետական մարդիկ գիտեն, թե նրանք ինչ պետք է անեն դրա համար. արդյունաբերության մեջ՝ ավելացնել սպա-ռազինության թողարկումը, մետաղի ձուլումը, վա-ռելանյութի արդյունահանումը, մեքենաների թողար-կումը. գյուղատնտեսության մեջ՝ օրինակելիորեն նախապատրաստել ցանքսին և ապահովել բարձր բեր-քի ստացումը. տրանսպորտում՝ ուժեղացնել ռազմա-ճակատի և ամբողջ տնտեսության համար հատկացված բեռների փոխադրումները: Սովետական հասարակու-





Լենինգրադի ռազմաճակատի զորքերի հրամանատար, Սովետական Միության Հերոս, Սովետական Միության Մարշալ Լ. Ա. ԳՈՎՈՐՈՎ.



Կարելական ռազմաճակատի զորքերի հրամանատար, Սովետական Միության Հերոս, Սովետական Միության Մարշալ — Կ. Ա. ՄԵՐԵՑԿՈՎ.

թյան բոլոր անդամները՝ բանվորները, գյուղացինե-րը, ինտելիգենտները գտել են իրենց տեղը ընդհանուր պայքարում, ազատության ընդհանուր շարքերի մեջ: Եվ նրանք պատրաստ են մինչև վերջը կատարելու ի-րենց պարտքը: Ղրիմի կոնֆերանսի արդյունքների հաղորդագրության կապակցությամբ ամբողջ երկրում ծավալված մասսայական միտինգների ու ժողովների ալիքը հանդիսանում է սովետական թիկունքի ու ռազմաճակատի միասնության նոր դեմոնստրացիա, ֆաշիստական Գերմանիայի վերջնական ջախջախմանը հասնելու համար մեր ժողովրդի անսասան կամքի դե-մոնստրացիա:

Մեծ Ստալինի կոչից ոգեշնչված սովետական երկիրը իր Կարմիր Բանակի տարեդարձը կդիմավորի նորանոր հաղթանակներով ռազմաճակատում և թի-կունքում:

(«ՊՐԱՎԴԱՅԻ» փետրվարի 16-ի առաջնորդողը)





Բելոռուսական 3-րդ ռազմաճակատի զոր-քերի հրամանատար, Սովետական Միու-թյան կրկնակի Հե-րոս, բանակի գեներալ Ի. Դ. ՉԵՐՆՅԱԽՈՎՍԿԻ



Մերձբալթյան 2-րդ ռազմաճակատի զոր-քերի հրամանա-տար, Սովետական Միության Հերոս, բանակի գեներալ Ա. Ի. ԵՐԵՄԵՆԿՈ



Մերձբալթյան 1-ին ռազմաճակատի զորքերի հրամանատար, Սովետական Միության Հերոս, բանակի գեներալ
Ի. Ք. ԲԱՂՐԱՄՅԱՆ



Ուկրաինական 4-րդ ռազմաճակատի զորքերի հրամանատար, բանակի գեներալ
Ի. Ե. ՊԵՏՐՈՎ

# ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ԶԱՎԱԿՆԵՐԸ ՀԱՅՐԵՆԻՔԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՄԱՐՏԵՐՈՒՄ

## ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՀԱՅ ԳԵՆԵՐԱԼՆԵՐԸ

### 1. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍ, ԲԱՆԱԿԻ ԳԵՆԵՐԱԼ ԻՎԱՆ ԲԱՂՐԱՄՅԱՆ

Հայրենական պատերազմի բոցերի մեջ իր անունը անմահ փառքով է պսակել բանակի գեներալ, Մերձբալթյան 1-ին ռազմաճակատի զորքերի հրամանատար, ստալինյան տաղանդավոր զորավար Իվան Բաղրամյանը: Նա պատերազմի առաջին իսկ օրից մասնակցել է գերմանա-ֆաշիստական հորդաների դեմ մղվող ահեղ ճակատամարտերին: Բաղրամյանը տիրապետել է անցյալի ռազմական արվեստին, Հայրենական պատերազմի փորձի հիման վրա բազմապատկել է այդ գիտելիքները և դարձել պատասխանատու ռազմաճակատներից մեկի հրամանատար:

Ստալինյան ստրատեգիան և տակտիկան, որով առաջնորդվում է բանակի գեներալ Բաղրամյանը, միշտ ապահովում է նրա մարտական գործողությունների հաջողությունը:

Մեր Հայրենիքի սիրտ Մոսկվայի պաշտպանության ծանր օրերին Բաղրամյանը գեներալ-լեյտենանտ էր և ստանձնել էր 16-րդ բանակի հրամանատարու-

թյունը: Նրա ղեկավարած 16-րդ բանակը անօրինակ սխրագործություններ կատարեց Մոսկվայի տակ գերմանական ընտիր զորքերը ջարդելու ժամանակ:

Բաղրամյանի լեգենդար բանակը Կարմիր Բանակի մյուս միավորումների հետ հարձակման անցավ Օրյոլ և Բելգորոդ քաղաքներն ազատագրելու համար: Այդ օրը, 1943 թվի օգոստոսի 5-ին, Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի հրամանով մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան առաջին անգամ հրանոթային որոտալից համազարկերով ողջունեց մեր քաջարի զորքերի պատմական հաղթանակը: Սովետական զենքի այդ վիթխարի հաղթության մեջ մեծ բաժին ուներ Բաղրամյանի գլխավորած գվարդիական բանակը:

Կառավարությունը, բարձր գնահատելով ընկեր Բաղրամյանի ունեցած մասնակցությունը այդ խոշոր ու նշանավոր օպերացիային, նրան՝ պարգևատրեց Սուվորովի 1-ին աստիճանի շքանշանով, իսկ ՍՍՌՄ Ժողկոմսովետը իր 1943 թվի օգոստոսի 26-ի որոշումով նրան շնորհեց գեներալ-գնդապետի կոչում:

ՍՍՌՄ Ժողկոմսովետը 1943 թվի նոյեմբերի 11-ի իր որոշմամբ գվարդիայի գեներալ-գնդապետ Ի. Բաղրամյանին շնորհում է բանակի գեներալի զինվորական բարձր կոչումը: Նույն օրը Պաշտպանության Պետական Կոմիտեն բանակի գեներալ Իվան Բաղրամյանին նշանակում է Մերձբալթյան 1-ին ռազմաճակատի զորքերի հրամանատար:

Գեներալ Բաղրամյանի ռազմաճակատի զորքերը 1943 թվի դեկտեմբերի 19-ին Նևելից հարավ ճեղքեցին հակառակորդի խիստ ամրացված պաշտպանության գոտին, գրավեցին ավելի քան 500 բնակավայր, ջարդելով գերմանական 87-րդ, 129-րդ և 211-րդ հետևակային և 20-րդ տանկային դիվիզիաները: Հակառակորդը մարտադաշտում թողեց մոտ 20·000 զինվորի ու սպայի դիակ: Գերի վերցվեց 2·000 զինվոր

ու սպա և գրավվեց վիթխարի քանակությամբ ռազմավար:

Մերձբալթյան ռազմաճակատների զորքերը մեծ ճակատամարտ տվին եղբայրական Բելոռուսիայի, Լատվիայի և Լիտվայի ազատագրման համար: Կատարելով Գերագույն Գլխավոր Հրամանատարության ստրատեգիական առաջադրանքը, Բաղրամյանը սրընթաց հարձակվեց Շաուլյայ քաղաքի վրա, կտրեց Բալթիկայից Արևելյան Պրուսիա տանող գրեթե բոլոր կոմունիկացիաները և գրոհով գրավեց քաղաքը:

Այդ օրը, հուլիսի 27-ին, Կարմիր Բանակը գերմանական զորքերին պատճառեց մեծ պարտություն, դա հիտլերյան բանակի ամենասև օրերից մեկն էր: Այդ օրը մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվան հրետանային հինգ հաղթական սալյուտներով ողջունեց մեր հարձակվող զորքերին: Դա այն օրն էր, երբ գերմանացիները կորցրին իրենց պաշտպանության 6 կարևոր բաստիոն:

Հինգ ռազմաճակատների տարած փայլուն հաղթանակի առթիվ նրանց հրամանատարներին, որոնց թվում Մերձբալթյան 1-ին ռազմաճակատի հրամանատար, բանակի գեներալ Իվան Բաղրամյանին շնորհվեց Սովետական Միության Հերոսի բարձր կոչում: Սովետական ողջ երկրի հետ ցնծության հրճվանքի մեջ էր նաև հայ ժողովուրդը, որի սնուցած զավակը բարձր է պահում իր քաջ նախնիների ռազմական փառապանծ ավանդները:

Սովետական Միության Հերոս, բանակի գեներալ Բաղրամյանը կրկին հարձակման անցավ, ճեղքեց հակառակորդի ուժեղ էշելոնավորված պաշտպանությունը Ռիգա քաղաքից հարավ-արևելք, հարձակման 4 օրվա ընթացքում առաջ շարժվեց մոտ 49 կիլոմետր, ընդարձակելով ճեղքվածքը 120 կիլոմետր ճակատով, մարտերով գրավեց ավելի քան 2·000 բնակավայր: Ապա նա թեքվեց դեպի Բալթիկ ծովի ափերը, ընդհուպ մոտեցավ Արևելյան Պրուսիայի սահմաններին,

կտրեց Ռիգայի ծովածոցում մնացած գերմանական 30 դիվիզիաների ճանապարհը դեպի Արևելյան Պրուսիա: Այսպիսով, նա պողպատյա օղակի մեջ առավ գերմանա-ֆաշիստական 30 ընտիր դիվիզիաներ:

Կարմիր Բանակի հունվարյան վճռական հարձակմանը մասնակցեցին նաև գեներալ Բաղրամյանի ղեկավարած ռազմաճակատի զորքերը, որոնք հունվարի 28-ին գրավեցին Լիտվական Կլայպեդա (Մեմել) քաղաքն ու նավահանգիստը, դրանով իսկ ավարտելով Սովետական Լիտվայի վերջնական մաքրումը գերմանական զավթիչներից:

## 2. ՆԱՎԱՏՈՐՄԻ ԱԴՄԻՐԱԼ ԻՎԱՆ ԻՍԱԿՈՎ

Փառահեղ մարտական ուղի է անցել ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի Ժողովրդական Կոմիսարի առաջին տեղակալ, Նավատորմի ադմիրալ Իվան Ստեփանի Իսակովը: Նա ծնվել է 1895 թվին Լեռնային Ղարաբաղում, միջնակարգ կրթությունը ստացել է Թբիլիսիում, ապա տեղափոխվել Պետրոգրադ (Լենինգրադ), ընդունվել ծովային նավատորմի ուսումնարանը, որն ավարտել է գերազանց գնահատականով: Նորավարտ սպան աշխատանքի է նշանակվում Բալթիկ ծովի ռազմական նավատորմի նավերից մեկում: Հետագայում ավարտում է ծովային ինստիտուտը և Ռազմա-Ծովային Ակադեմիան:

Քաղաքացիական պատերազմի դաժան տարիներին, սոցիալիստական շինարարության շրջանում և ֆաշիստական Գերմանիայի ու նրա վասալների դեմ մղվող արյունահեղ մարտերի ժամանակ Իվան Իսակովը իր անսպառ ուժն ու տաղանդը ի սպաս է դրել սովետական պետության պաշտպանության սրբազան գործին:

Նավատորմի ադմիրալ Իսակովը ռուսական զենքի ու հերոսական փառքի՝ Սևաստոպոլ քաղաքի պաշտպանության վետերաններից մեկն է: Սևծովյան հերոսական



նավատորմի գլուխն անցած 250 օր հերոսական պաշտպանողական ահեղ մարտեր է մղել Սևաստոպոլ քաղաքի վրա հարձակվող գերմանական և ռումինական ընտիր դիվիզիաների դեմ: Սևաստոպոլի նավատորմայինները 250 օր պողպատե պատնեշի նման հարձակվող կատաղի թշնամու առաջ կանգնեցին կապույտ ծովի մեջ հերոսական քաղաքի շուրջը և խանձված բլուրների վրա: Սևաստոպոլի հերոս պաշտպանները այդ ծանր օրերին երբեք չտատանվեցին և ստալինյան վճռականությամբ ու կազմակերպվածությամբ մղում էին դաժան ու ծանր մարտեր: Իսակովի ղեկավարությամբ Սևծովյան անվեհեր նավաստիները անօրինակ կատաղի մարտեր են մղել նաև Նովոռոսիյսկի պաշտպանության համար:

Սովետական կառավարությունը բարձր է գնահատել ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի Ժողկոմի տեղակալ, նավատորմի ադմիրալ Իվան Ստեփանի Իսակովի ծառայություններն ու անմոռանալի սխրագործությունները, նրա կուրծքը զարդարել է Լենինի երկու, Կարմիր Դրոշի երկու, Ուշակովի 1-ին աստիճանի և Կարմիր Աստղի շքանշաններով, Սևաստոպոլի, Լենինգրադի ու Կովկասի պաշտպանության համար մեդալներով:

## 3. ԲԺՇԿԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ԳԵՆԵՐԱԼ-ԳՆԴԱՊԵՏ ԼԵՎՈՆ ՕՐԲԵԼԻ

Լևոն Աբգարի Օրբելին ծնվել է ծառայողի ընտանիքում 1882 թվի հուլիսի 8-ին Ախտայի շրջանի Ծաղկաձոր գյուղում: 1899 թվին Լևոն Օրբելին ավարտել է Թբիլիսիի 3-րդ գիմնազիան ոսկե մեդալով և նույն թվին մտել է Ռազմա-բժշկական Ակադեմիան:

Դեպի գիտական աշխատանքը ունեցած հետաքրքրությունը և հակումը Լևոն Օրբելու մոտ երևան է եկել շատ վաղ հասակից:

Ակադեմիայի 5-րդ կուրսում սովորելու ժամանակ նորից է պարգևատրվում ոսկե մեդալով:

Լևոն Օրբելին 1904 թվին ավարտում է Ռազմա-բժշկական Ակադեմիան, նշանակվում նավատորմի գվարդիական էկիպաժներից մեկում կրտսեր բժշկի պաշտոնով: Նա Կրոնշտադտի նավահանգստում և Պետերբուրգի (Լենինգրադի) ծովային հոսպիտալում ծառայում է չորս տարի: Նույն ժամանակամիջոցում Օրբելին հանձնում է դոկտորական քննություն և փորձնական բժշկական ինստիտուտում Իվան Պավլովի մոտ ֆիզիոլոգիական բաժնում դառնում է պրակտիկանտ: 1907 թվից կատարում է ֆիզիոլոգիական բաժնի վարիչի օգնականի պարտականությունը: Օրբելին 25 տարեկան հասակից հաղորդակից է դառնում գիտական կազմակերպական այն գործունեությանը, որը ծաղկում է Սովետական իշխանության տարիներին: Դեռ 1908 թվին նա պաշտպանում է դիսերտացիա և ստանում է բժշկական գիտությունների դոկտորի աստիճան:

1908—1910 թվերին Լևոն Օրբելին գործուղվում է արտասահման գիտական աշխատանքներ կատարելու համար: Արտասահմանից վերադառնալուց հետո, նա ակտիվ դասախոսական աշխատանք է ծավալում Ռազմա-բժշկական Ակադեմիայում որպես դոցենտ: 1913 թվից մինչև այժմ Լևոն Աբգարի Օրբելին հանդիսանում է Պետրոգրադում (Լենինգրադում) Լեսգաֆտի բնագիտական լաբորատորիայի (այժմ Լեսգաֆտի անվան գիտահետազոտական ինստիտուտի) ֆիզիոլոգիական բաժնի ղեկավար: 1920 թվին նա ընտրվում է Լենինգրադի առաջին բժշկական ինստիտուտի ֆիզիոլոգիական ամբիոնի պրոֆեսոր: Լևոն Օրբելին 1925 թվին ընտրվում է Ռազմա-բժշկական ինստիտուտի ֆիզիոլոգիայի ամբիոնի վարիչ և մինչև այսօր էլ ղեկավարում է այդ ամբիոնը:

Լևոն Աբգարի Օրբելին 1935 թվից ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի իսկական անդամ է, բիոլոգիական բաժնի ակադեմիկոս-քարտուղար, իսկ 1942






Նավատորմի ադմիրալ Ի. ԻՍԱԿՈՎ, բժշկական ծառայության գեներալ-գնդապետ Լ. ՕՐԲԵԼԻ




Սովետական Միության Հերոս, հրետանու գեներալ-լեյտենանտ Մ. ՊԱՐՍԵՂՈՎ, հրետանու գեներալ-լեյտենանտ Ի. ՎԵՔԻԼՈՎ

Թվից ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի վիցե-պրեզիդենտ:

1942 թվին կառավարությունը հանձնարարում է գեներալ-լեյտենանտ Լ. Ա. Օրբելուն վերակազմել Ռազմա-բժշկական Ակադեմիան:

Լ. Ա. Օրբելին Կարմիր Բանակի հիմնադրման հենց առաջին օրվանից գտնվում է նրա շարքերում:

Որպես ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիայի վիցե-պրեզիդենտ և նույն Ակադեմիայի Ֆիզիոլոգիական բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար, գեներալ-լեյտենանտ Լևոն Օրբելին Հայրենական պատերազմի տարիներում մեծ ջանքեր է գործ դրել Սովետական Միության գիտական հիմնարկությունները և գիտնականներին Կարմիր Բանակի ու Նավատորմի բժշկական սպասարկման մասնակից դարձնելու համար: Այս նպատակով ՍՍՌՄ Գիտությունների Ակադեմիան ստեղծել է նրա ղեկավարությամբ ռազմա-սանիտարական հանձնաժողով:

ՍՍՌՄ Ժողկոմսովետը բարձր գնահատելով Լևոն Օրբելու մատուցած ծառայությունները Հայրենական պատերազմի տարիներին ռազմա-բժշկական գիտության ասպարեզում, 1944 թվի մայիսի 29-ի որոշմամբ նրան շնորհել է բժշկական ծառայության գեներալ-գնդապետի զինվորական կոչում:

Գեներալ Օրբելին պարգևատրվել է Լենինի, Աշխատանքային Կարմիր Դրոշի, Կարմիր Դրոշի շքանշաններով և «ԲԳԿԲ 20-ամյակի» ու «Լենինգրադի պաշտպանության համար» մեդալներով:

## 4. ԳԵՆԵՐԱԼ-ԼԵՅՏԵՆԱՆՏ ՍԵՐԳԵՅ ԳԱԼԱՋԵՎ

1902 թվին Դոնի Նոր Նախիջևան քաղաքում է ծնվել գեներալ-լեյտենանտ Սերգեյ Գալաջևը: Միջնակարգ կրթությունը ստացել է Ռոստովում, իսկ բարձրագույնը՝ Մոսկվայում:



1919 թվի ամառը Դենիկինի սպիտակգվարդիական զորքերը մոտենում էին Մոսկվային: Այդ բուռն և ծանր օրերին Լենին-Ստալինի պարտիան լոզունգ տվեց. «Բոլորը Դենիկինի դեմ»: 17 տարեկան կոմերիտական հայրենասեր Սերգեյ Գալաջևը ոգևորված բոլշևիկյան պարտիայի լոզունգով, զենք վերցրեց և Տուլայի մոտ մասնակցեց Դենիկինի դեմ մղվող կռիվներին:

Սոցիալիստական խաղաղ շինարարության տարիներին ընկ. Գալաջևը երկար ժամանակ վարում է պարտիական մի շարք պատասխանատու աշխատանքներ: Նա սովորում և ավարտում է Մոսկվայի Կարմիր պրոֆեսուրայի փիլիսոփայության ինստիտուտը:

Հայրենական պատերազմի առաջին օրերին նա արդեն արևմտյան ռազմաճակատում գործող N բանակի Ռազմական Խորհրդի անդամ էր:

Երրորդ տարին է, ինչ գեներալ-լեյտենանտ Սերգեյ Գալաջևը ռազմաճակատներից մեկի քաղաքական վարչության պետն է:

Գեներալ Գալաջևը պարգևատրվել է 9 շքանշանով:

## 5. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍ, ՀՐԵՏԱՆՈՒ ԳԵՆԵՐԱԼ-ԼԵՅՏԵՆԱՆՏ ՄԻԽԱՅԻԼ ՊԱՐՍԵՂՈՎ

Հայ ժողովրդի քաջարի զավակի անունը մեր երկրին հայտնի դարձավ դեռևս քաղաքացիական պատերազմի տարիներին, այնուհետև՝ 1939—40 թ. թ. սպիտակ-ֆինների դեմ մղված պատերազմի օրերին:

Միխայիլ Պարսեղովը ծնվել է 1899 թվականին Լեռնային Ղարաբաղում: 11-ամյա պատանին շատ

շուտ ստիպված էր հրաժեշտ տալ հայրենի օջախին, ծերունի բրուտ հորը: Ծայրահեղ չքավորությունը նրան ստիպեց թողնել գյուղը և գնալ Միջին Ասիա: Այստեղ երկար ժամանակ սևագործ բանվորություն արավ: Երբ սկսվեց ռևոլյուցիան ընկեր Պարսեգովը զենք վերցնելով, գնաց կռվելու սովետական պետության ստեղծելու, նոր երջանիկ կյանքի համար: Քաղաքացիական կռիվներում նա հրամանատար էր: Քաղաքացիական պատերազմը վերջացավ: Պարսեգովը ընդունվեց ռազմական Ակադեմիա և ավարտեց գերազանց գնահատականով: Ուժեղ կամքի տեր մարդը դարձավ հրետանային գիտության հմուտ ու գերազանց գիտակ: Կարմիր Բանակի խոշոր միավորումների շարքերում վարել է չափազանց պատասխանատու պաշտոններ: Կարմիր Բանակի համար նա արդեն հրետանային գիտության ճանաչված մասնագետ էր ու հասել էր կորպուսի հրամանատարի աստիճանին և հրետանու գեներալ-լեյտենանտի կոչման:

Գեներալ Պարսեգովի գլխավորած կորպուսը 1939—40 թվին վճռական հակահարված է հասցնում սպիտակ ֆիններին: Նենգ թշնամուն նա հակադրում է սովետական հրետանու հզորությունն ու սովետական մարդկանց ուժն ու արիությունը:

Դաժան մարտերում հրետանին մեր հետևակի հետ մեկտեղ մոտեցավ «Մաններհայմի գծի» հիմնական ամրություններին: Կարելական պարանոցում ֆիննական իշխանությունները երկաթ-բետոնե, գրանիտե, հողե բազմաթիվ հզոր ամրություններ էին կառուցել: Այդ դոտերն ու դզոտերը անառիկ էին համարվում: Այստեղ ռազմական գործողությունների բախտը վճռում էր հրետանին: Հետախուզվեց ֆիննական ամրությունների ամբողջ սիստեմը: Եվ ահա սկսվեց «Մաններհայմի գծի» ճեղքման նախապատրաստությունը: 1940 թվականի փետրվարի 11-ին, առավոտյան հերոսական զորամասերն անցան հարձակման:



«Մաններհայմի գիծը» ճեղքված էր:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը բարձր գնահատեց հրետանու գեներալ-լեյտենանտ Միխայիլ Արտեմի Պարսեգովի ծառայությունը և 1940 թվի իր Հրամանագրով նրան շնորհեց Սովետական Միության Հերոսի կոչում:

Գեներալ-լեյտենանտ Պարսեգովը իր զորամասերը Հայրենական մեծ պատերազմում նորից ահեղ մարտի տարավ սովետական սրբազան հողը ավազակորեն ներխուժած գերման-ֆաշիստական վայրագ հորդաների դեմ և 1942 թվին 3 անգամ պարգևատրվեց ՍՍՌՄ շքանշաններով: Այժմ 9 շքանշան զարդարում է նրա կուրծքը:

## 6. ՀՐԵՏԱՆՈՒ ԳԵՆԵՐԱԼ-ԼԵՅՏԵՆԱՆՏ ԻՎԱՆ ՎԵՔԻԼՈՎ

Թբիլիսիի կադետական դպրոցն ավարտելուց հետո, Իվան Վեքիլովը ընդունվում է Պետրոգրադի (Լենինգրադի) հրետանային ուսումնարանը: Առաջին իմպերիալիստական պատերազմի օրերին, 1914 թվի աշնանը, նա գերազանց գնահատականով ավարտում է հրետանային ուսումնարանը:

19 տարեկան նորավարտ սպային, իբրև շնորհալի, բանիմաց հրետանավորի, նշանակում են գերմանացիների դեմ արևմտյան ռազմաճակատում գործող գվարդիական հրետանային 3-րդ բրիգադայի մարտկոցներից մեկի հրամանատար: Վեքիլովը կարճ ժամանակում աչքի է ընկնում թշնամու դեմ տարած հաղթանակներով, այստեղից էլ սկսվում է նրա ռազմական կարյերան: Շուտով նրան տեղափոխում են Կովկասյան ռազմաճակատ, սկզբում Սարիղամիշ ու ապա Ղարս: Փորձված երիտասարդ սպան իր հրետանային կործանիչ հարվածներով մասնակցում է սարիղամիշյան հայտնի մարտերին: Բոլորին հայտնի է,

թե ինչպիսի փառք ձեռք բերեց ռուսական հրետանին այդ մարտերի ժամանակ:

Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին օրից Իվան Վեքիլովը 10 տարի շարունակ զանազան պատասխանատու պաշտոններ է վարել Վորոշիլովի անվան բանվոր-հրաձգային դիվիզիայի հրետանային գնդում և երկար ժամանակ եղել է նրա հրամանատարը: Վեքիլովը սովորում ու ավարտում է Մոսկվայի հրետանային ակադեմիան: Նա աճում ու դաստիարակվում է Կարմիր Բանակի շարքերում: 1930 թվին նրան առաջ են քաշում ու նշանակում Հյուսիսային Կովկասի զինվորական օկրուգի հրետանային ծառայության պետի տեղակալ: Որոշ ժամանակից հետո Վեքիլովին նշանակում են ԲԳԿԲ հրետանային Գլխավոր Վարչությունում պատասխանատու աշխատանքի: Այնուհետև 1939—40 թվերին նրան տեսնում ենք սպիտակ ֆինների դեմ մղվող կատաղի մարտերում «Մաններհայմի գիծը» ճեղքող հերոս զորավարների շարքում: Այստեղ նա պարգևատրվում է Կարմիր Դրոշի շքանշանով:

Հայրենական պատերազմի առաջին օրերից նա մեկնում է հարավ-արևմտյան ռազմաճակատ: Շուտով նա ստանում է հրետանու գեներալ-մայորի կոչում: Վեքիլովը Օդեսայի և Ստալինգրադի հերոս պաշտպաններից է: Ստալինգրադի ծանր օրերին գեներալ Վեքիլովը հրետանային պաշտպանության ղեկավարներից մեկն էր: 1942 թվի նոյեմբերի 19-ին Ստալինգրադի մոտ Կարմիր Բանակի հարձակման այդ պատմական օրը որոտացին նաև հրետանու գեներալ-լեյտենանտ Իվան Վեքիլովի մարտկոցները: Մասնակցելով հերոսական Կարմիր Բանակի սրընթաց հարձակմանը, նա անցել է մարտական փառահեղ ուղի: Նրա հրետանավորները անցան Դոն գետը, մասնակցեցին Ռոստովի, Դոնբասի ազատագրմանը, անցան Դնեպրն ու Դեսնան: Սովետական հրետանու կրակի ուժով






Սովետական Միության Հերոս, գեներալ-մայոր Ա. ՂԱԶԱՐՅԱՆ և գեներալ-մայոր Ն. ՍԱՖԱՐՅԱՆ




Գեներալ-մայոր Ի. ԳԱՍՊԱՐՅԱՆ, գեներալ-մայոր Ս. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Վեքիլովի գլխավորած հրետանավորները մասնակցեցին թշնամու Տուապսե—Թբիլիսի խմբավորման ջախջախմանը:

Հայրենիքը գեներալ Իվան Դավթի Վեքիլովի կուրծքը պարգևել է Սուվորովի, Կուտուզովի 2-րդ աստիճանի, Կարմիր Դրոշի երկու, Կարմիր Աստղի, Հայրենական պատերազմի առաջին աստիճանի շքանշաններով և Օդեսայի ու Ստալինգրադի պաշտպանության համար մեդալներով:

## 7. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՍԱՐԳԻՍ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

Գեներալ-մայոր Սարգիս Մուղամիի Մարտիրոսյանը ծնվել է 1900 թվին Շամախու շրջանի Մադրասա գյուղում: Նախնական կրթությունը ստացել է գյուղի դպրոցում, ապա սովորել է Էջմիածնի Գևորգյան ճեմարանում: 1918 թվին կամավոր մտնում է Կարմիր Բանակի շարքերը, իբրև Կարմիր մարտիկ ակտիվ մասնակցում է Ադրբեջանի և Հայաստանի քաղաքացիական կռիվներին: Այդ ժամանակ էլ ընդունվում է բոլշևիկների պարտիայի շարքերը: Նա սովորում է ռազմական դպրոցներում և դառնում հրամանատար: Եռանդուն հրամանատարը 17 տարի շարունակ զանազան պատասխանատու պաշտոններ է վարել Վորոշիլովի անվան Հայկական հրաձգային դիվիզիայում: Մարտիրոսյանը սովորում է Մոսկվայի բարձրագույն հրամկազմի կատարելագործման դասընթացներում: 1939 թվին նա ակտիվ մասնակցում է Արևմտյան Ուկրաինայի ազատագրմանը և ապա 1939—40 թվերին նրան տեսնում ենք սպիտակ ֆինների դեմ մղվող մարտերի բոցերի մեջ:

Հայրենական պատերազմի առաջին օրից մինչև այժմ Սարգիս Մարտիրոսյանը գտնվում է ռազմաճակատում:

Հերոսական Կարմիր Բանակի մեծ հարձակման այս օրերին Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զոր-



քերի թվում է գեներալ-մայոր Սարգիս Մարտիրոսյանի միավորումը: Կարմիր Բանակի հարձակողական մարտերի ընթացքում Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի հրամաններում աչքի ընկած գեներալների թվում 13 անգամ հիշատակվել է նրա անունը:

Մարտիրոսյանը առաջիններից մեկն էր, որ հասավ ՍՍՌՄ պետական սահման Պրուտ գետին ու մտավ Ռումինիայի հողը: Նա այստեղ մասնակցել է ռումինական Դորոխոյ, Բոտոշանի և Յասսի քաղաքների գրավմանը և իր պանծալի զորամասով իբրև հաղթող մտել Բուխարեստ:

Կարմիր Բանակի հունվարյան մեծ հարձակման օրերին Մարտիրոսյանի զորամասերը Ուկրաինական առաջին ռազմաճակատի զորքերի թվում ներխուժեցին Գերմանական Սիլեզիա, գրավեցին Կրայցբուրգ, Ռոզենբերգ, Պիտշեն, Լանդսբերգ, Գուտենտագ և այլ քաղաքները և անցան Օդեր գետը:

## 8. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՆՎԵՐ ՍԱՖԱՐՅԱՆ

Գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանը ծնվել է 1900 թվին Վանա լճի ափին՝ Արճեշ գյուղում: Նվերի ծնողները զոհ են գնում 1914—15 թվերի հայկական կոտորածների ժամանակ: Որբացած Նվերը գալիս է Էջմիածին, ընդունվում Օշականի մանկատունը և ապա Թաքֆալյի Կոմունայի մանկատունը: 1923—27 թվերին սովորում ու ավարտում է Երևանի ռազմական դպրոցը: Աշխատում է Հայկական 3-րդ գնդում սկզբում որպես դասակի և ապա վաշտի հրամանատար: 1940 թվին ավարտում է Մոսկվայի Ֆրունզեի անվան Ռազմական Ակադեմիան:

Նվեր Սաֆարյանը Հայրենական պատերազմի մեջ մտավ իբրև գնդի հրամանատար: 1942 թվին նրա գունդը և ինքը պարգևատրվում են Կարմիր Դրոշի շքանշանով:

Շուտով նրան առաջ են քաշում և նշանակում դիվիզիաներից մեկի հրամանատար, որից հետո նա ստանձնում է Հայկական 89-րդ հրաձգային դիվիզիայի հրամանատարի պաշտոնը: Սաֆարյանի գլխավորած Հայկական դիվիզիան Հայրենական պատերազմի արյունահեղ մարտերում անցավ մարտական փառահեղ ուղի, բարձր պահեց հայ ժողովրդի ռազմական փառքը: Հայկական 89-րդ դիվիզիան Մոզդոկի տակից մարտերով անցավ մինչև Թաման թերակղզին, մասնակցեց Նովոռոսիյսկի, Թաման քաղաքի ու Թաման թերակղզու ազատագրմանը: Մեծ Ստալինի հրամանով դիվիզիային շնորհվեց «Թամանյան» անունը: Գեներալ-մայոր Նվեր Սաֆարյանի ղեկավարությամբ գործող Հայկական 89-րդ դիվիզիան Կարմիր Բանակի մյուս զորամասերի հետ գրավել է Կերչ քաղաքն ու ամրոցը: Սաֆարյանի ռազմիկները Ղրիմի ակտիվ ազատարարներից են: Դիվիզիան վճռական մասնակցություն ունեցավ Սևաստոպոլ քաղաքի ազատագրմանը:

Սովետական կառավարությունը բարձր գնահատեց Հայկական դիվիզիայի անմոռանալի սխրագործությունները, դիվիզիային պարգևատրեց Կարմիր Դրոշի և Կարմիր Աստղի շքանշաններով: Դիվիզիայի 7.000 հայ ռազմիկների կրծքին փայլում են ՍՍՌՄ շքանշաններ ու մեդալներ, իսկ ինքը գեներալ Սաֆարյանը պարգևատրվել է 6 շքանշանով:

## 9. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԲԱԳՐԱՏ ԱՌՈՒՇԱՆՅԱՆ

Կարմիր Բանակի առաջին հայ գեներալներից է Բագրատ Առուշանյանը: Նա ծնվել է 1899 թվականին Զանգեզուրի Հին Գորիս գյուղում:

Դեռևս մանուկ հասակից զինվորագրվելով ռուսական բանակին, նա միշտ ձգտել է բարձրացնել իր ռազմական գիտությունը, ավարտել է ռազմական երկու ակադեմիա, դասակի հրամանատարից հասել



է կորպուսի հրամանատարի աստիճանին ու գեներալ-մայորի կոչման:

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված մարտերում գեներալ Առուշանյանի գլխավորած զորամասերը պանծալի սխրագործություններ են կատարել: Ինքը գեներալը ամենադժվար մոմենտներին չտեսնված խիզախություն ու տոկունություն է հանդես բերել: Հմուտ ու հնարագետ զորավարը դաժան կռիվների մեջ հարթել է հաղթանակի ճանապարհը: Գեներալ-մայոր Առուշանյանի զորքերը մոտ 7 ամիս կատաղի մարտեր են մղել Սովետական Միության Հերոս, բանակի գեներալ Բաղրամյանի ղեկավարած Մերձբալթյան 1-ին ռազմաճակատում սովետական Բալթիկան գերմանա-ֆաշիստական սրիկաներից ազատագրելու համար: Նա այժմ իր զորքով գտնվում է թշնամու տերիտորիայում, Արևելյան Պրուսիայում:

Առուշանյանի զորքերի վճռական մասնակցությամբ Կարմիր Բանակի զորամասերն անցան Դայմե և Պրեգել գետերը, գրավեցին Լաբիաու, Վելաու, Տապիաու, Ալլենբուրգ, Նորդենբուրգ, Լյոցեն, Լանդսբերգ և Բարտենշտայն քաղաքները:

Գեներալ Առուշանյանի կրծքին փայլում են Կարմիր դրոշի 3, Սուվորովի ու Կուտուզովի 2-րդ աստիճանի շքանշանները:

## 10. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍ, ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԱՆԴՐԱՆԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ

Հայ ժողովուրդը հպարտությամբ է արտասանում Դնեպրի հերոս, գեներալ-մայոր Անդրանիկ Ղազարյանի անունը:

Գեներալ-մայոր Անդրանիկ Ղազարյանի զորամասը իր հարձակումը սկսել է Օրյոլ և Բելգորոդ

քաղաքների ազատագրման համար մղված մարտերում: Այստեղ դիվիզիան վայելուն հաղթանակ տարավ: Երբ սովետական զորքերը մոտեցան Դնեպրին, Ղազարյանի դիվիզիան առաջադրանք ստացավ սրընթաց գրոհով անցնել Դեսնա գետը: Առանց տեխնիկական հարմարությունների՝ պոնտոնների, կամուրջների և այլ միջոցների պետք էր անցնել այդ բավականին լայն գետը: Գեներալ Ղազարյանը վճռում է ինչ գնով էլ լինի կատարել մարտական հրամանը: Նա պրիմիտիվ միջոցներով—ձկնորսական լաստանավով մի գունդ անց է կացնում դեպի արևմտյան ափը և կատաղի մարտեր մղելով սկսում լայնացնել պլացդարմը: Գեներալը պատվով կատարեց մարտական առաջադրանքը: Զարգացնելով հաջող հարձակումը, Կարմիր Բանակի մյուս զորամասերն անցան Դեսնա գետը և գրավեցին Նովգորոդ-Սևերսկ մարզային քաղաքը: Դեսնա գետն անցնելու և Նովգորոդ-Սևերսկ քաղաքը գրավելու առթիվ Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինը իր հրամանում նշեց նաև գեներալ-մայոր Ղազարյանի դիվիզիայի գերազանց գործողությունը:

Կատաղի մարտերով Կարմիր Բանակի զորքերը մոտեցել էին Ուկրաինական մեծ գետ Դնեպրին: Գեներալ-մայոր Ղազարյանը առաջադրանք է ստանում հաղթահարել ջրային այդ մեծ խոչընդոտը: Փորձված և քաջ հրամանատարի անմիջական ղեկավարությամբ 380 սովետական խիզախներ արհամարհեցին վտանգն ու մահը, նստեցին լայնածավալ գետի ալիքների մեջ, օգտագործելով գետանցի ամենահասարակ միջոցները՝ խոտով լցված պլաշչ-վրանները, գերանները, գյուղական խրճիթներից պոկած դռները: Ինքը՝ Ղազարյանը անցավ ձկնորսական փոքրիկ նավակով: Թշնամին հանկարծակիի եկավ: Ղազարյանի 380 մարտիկները երկու օր անընդհատ, գիշեր ու ցերեկ հերոսաբար դիմադրեցին 1.000-ից ավելի հիտլերականների կատաղի գրոհին, պաշտպանելով ընդամենը 300 մետր






Սովետական Միության Հերոս, գեներալ-մայոր Ա. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ, գեներալ-մայոր Ս. ԳԻՆՈՍՅԱՆ




Գվարդիայի գեներալ-մայոր Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ, գվարդիայի գեներալ-մայոր Հ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

տարածությունը դեպի աջ ափին: Դնեպրի աջ ափին անցնելու անօրինակ խիզախության համար կարմիրբանակայինների ու սպաների մի մեծ խումբ, որոնց հետ և ինքը՝ Անդրանիկ Ղազարյանը արժանացան Սովետական Միության Հերոսի բարձր կոչման: Գեներալ-մայոր Անդրանիկ Ղազարյանի անունը հաճախ է նշվել Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի հրամաններում: Հերոսի պայծառ անունը հիշատակվեց նաև Արևելյան Պրուսիա մտած աչքի ընկնող գեներալների թվում:

## 11. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԻՍԱՀԱԿ ԳԱՍՊԱՐՅԱՆ

Գեներալ-մայոր Իսահակ Գասպարյանը ծնվել է 1902 թվին, Վանի շրջանի Սինդ գյուղում, չքավոր գյուղացու ընտանիքում: Նրա ծնողները զոհ գնացին առաջին իմպերիալիստական պատերազմում: Նա գալիս է Երևան ընդունվում Իջևանի մանկատունը, տարրական կրթությունը ստանում մանկատանում: Գասպարյանը երկար ժամանակ բատրակություն է անում Փարաքար գյուղում:

Հայաստանում սովետական իշխանության հաստատվելուց հետո կոմերիտական Գասպարյանին տեսնում ենք Հայկական դիվիզիայի զորամասերում: Իսահակ Գասպարյանը 1929 թվին ավարտում է Թբիլիսիի ռազմական դպրոցը: Եռանդուն սպան ռազմական գործի մեջ աճում է արագ, շուտով նա հասնում է դիվիզիայի շտաբի պետի պաշտոնին, սովորում ու ավարտում է Ֆրունզեի անվան Ակադեմիան:

Իսահակ Գասպարյանը Հայրենական պատերազմի մարտադաշտ է մտնում Լենինգրադի ռազմաճակատում, 1941 թվի դեկտեմբերին նրա ղեկավարությամբ գործող զորամասը ակտիվ մասնակցություն ունեցավ թշնամու Վոլխովյան խմբավորման ջախջախ-



ման գործում: Նրա գլխավորած զորամասը անցնում է մարտական փառահեղ ուղի: Թշնամու դեմ մղվող կատաղի մարտերի մեջ նա աճում, կոփվում ու դառնում է ճանաչված հրամանատար:

Գեներալ-մայոր Գասպարյանի զորամասը հերոսական մարտեր է մղել գերմանա-ֆաշիստական զավթողներից Կալուգա, Կիրով, Մոզիր, Մինսկ, Օստրոլենկա, Գրոդնո և Օսովեց քաղաքների ազատագրման համար և ազատագրել ավելի քան 800 այլ բնակավայր: Նրա զորամասերից 12 ռազմիկ ստացել են Սովետական Միության Հերոսի բարձր կոչում, իսկ 7.545 ռազմիկ պարգևատրվել են ՍՍՌՄ շքանշաններով ու մեդալներով: Գեներալ Գասպարյանի հաղթ կրծքին փայլում են Կարմիր Դրոշի չորս և Սուվորովի 2-րդ աստիճանի շքանշանները:

## 12. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՍՏԵՓԱՆ ԳԻՆՈՍՅԱՆ

Ստեփան Գինոսյանը ավարտելով Ախալքալաքի քաղաքային դպրոցի 6-րդ դասարանը, 1918 թվին թողեց հայրենի Սաթխա գյուղը, կամավոր մտավ Կարմիր Բանակի շարքերը, իբրև կարմիր մարտիկ ակտիվորեն մասնակցեց Հայաստանի և Վրաստանի քաղաքացիական կռիվներին և ընդմիշտ զինվորագրվեց Կարմիր Բանակին:

Հայկական դիվիզիայի հրամանատարությունը նրան երկու անգամ գործուղել է Մոսկվա սովորելու: Գինոսյանը գերազանց գնահատականով ավարտում է ռազմական դպրոցը և Ֆրունզեի անվան ռազմական Ակադեմիան:

1939—40 թվերին մենք փոխգնդապետ Ստեփան Գինոսյանին տեսնում ենք հեռավոր Կարելական պարանոցում սպիտակֆինների դեմ դաժան ու արյունահեղ մարտեր մղող Կարմիր Բանակի առաջավոր շարքերում: Հրամանատարությունը բարձր գնահա-

ռելով Գինոսյանի ռազմական հմտությունը, նրան շնորհում է գնդապետի կոչում և պարգևատրում Կարմիր Դրոշի շքանշանով:

Հայրենական պատերազմի առաջին օրից սկսած Գինոսյանը գտնվում է ռազմի դաշտում սկզբում հյուսիս-արևմտյան և ապա արևմտյան ռազմաճակատում իբրև N բանակի շտաբի պետ: Մոսկվայի պաշտպանության ահեղ օրերին N բանակի շտաբի պետ Գինոսյանը անմոռանալի աշխատանք է կատարում:

Ընկեր Գինոսյանը Հայրենական պատերազմի ռազմաճակատներում աճում, կոփվում ու դառնում է բանիմաց և շնորհալի հրամանատար: Նա խորապես ուսումնասիրում է մեծ Ստալինի ռազմական արվեստը: Շուտով ՍՍՌՄ Ժողկոմսովետը Ստեփան Գինոսյանին շնորհում է գեներալ-մայորի զինվորական կոչում:

Հարազատ Մոսկվայից, կռվի բոցերի միջով այժմ նա հասել է թշնամու տերիտորիան՝ Արևելյան Պրուսիա: Բելոռուսական 2-րդ ռազմաճակատի զորքերի հետ, գեներալ-մայոր Ստեփան Գինոսյանի միավորման զորքերը գրավեցին Արևելյան Պրուսիայի Վիլլենբերգ, Օրտելսբուրգ, Մորունգեն, Զալֆելդ և Ֆրայշտադտ քաղաքները:

## 13. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԳԵՎՈՐԳ ՏԵՐ-ԳԱՍՊԱՐՅԱՆ

Գեներալ-մայոր Գևորգ Տեր-Գասպարյանը ծնվել է 1903 թվին, Արաքսի ափին, Նախիջևան քաղաքում ծառայողի ընտանիքում: Սովորել է քաղաքային դըպրոցում: 1920 թվին կամավոր ընդունվում է Կարմիր Բանակը: Սովորում ու ավարտում է Երևանի Մյասնիկյանի անվան ռազմական դպրոցը: 1921 թվին ընդունվում է Լենին-Ստալինի պարտիայի շարքերը: 1920—1935 թվերին ծառայել է Վորոշիլովի անվան Հայկական լեռնա-հրաձգային դիվիզիայում, վարել է զանազան պատասխանատու պաշտոններ:



1938 թվին գերազանց գնահատականով ավարտում է Մոսկվայի Ֆրունզեի անվան Ակադեմիան:

Տեր-Գասպարյանի ղեկավարած դիվիզիան, գտնըվելով Բելոռուսիայի արևմտյան սահմանում, առաջիններից մեկն էր, որ մարտի բռնվեց գերման-ֆաշիստական բանակի դեմ: Տեր-Գասպարյանի դիվիզիան ջախջախիչ հարվածներ է հասցնում ստոր և արյունարբու թշնամուն:

Գեներալ Տեր-Գասպարյանը և իր դյուցազնական դիվիզիան հերոսաբար մարտնչել են Ուկրաինայի ու Բելոռուսիայի ազատագրման համար մղված ահեղ կռիվներում: Գերմանացիների կողմից Դնեպրի և Դեսնայի ափերին ստեղծված ամրությունները ճեղքելու ու այդ գետերն անցնելու համար գեներալ-մայոր Գևորգ Տեր-Գասպարյանը պարգևատրվեց Սուվորովի 1-ին և 2-րդ աստիճանի շքանշաններով:

## 14. ՀՐԵՏԱՆՈՒ ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՆԻԿՈԼԱՅ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Հրետանու գեներալ-մայոր Նիկոլայ Հովհաննիսյանի խիզախ հրետանավորները ուղիղ նշանառությամբ հօդս ցնդեցրին Գերմանիայի հարավ-արևելյան սահմանների երկաթ-բետոնե ամրությունները, ճանապարհ հարթեցին հետևակի համար, որը ներխուժեց գերմանական Սիլեզիա:

Հայ ժողովրդի հերոս զավակ, հրետանու գեներալ-մայոր Հովհաննիսյանի պանծալի հրետանավորները այժմ գտնվում են Բեռլինից ոչ-շատ հեռու՝ Բրեսլաու քաղաքի մոտ:

Սովետական սրբազան Հայրենիքի պաշտպանության համար մղվող մարտերում Նիկոլայ Հովհաննիսյանը անցել է փառահեղ մարտական ուղի: Հովհաննիսյանի հրետանավորները կատաղի մարտերի բո-

ցերի միջով Օրյոլից հասան մինչև գերմանական Էլբ քաղաքը: Լենինգրադի բլոկադայի դժվարին օրերին հերոս քաղաքի պաշտպանների շարքում էին ինքը՝ գեներալ Ն. Հովհաննիսյանը և իր 20-ամյա որդին՝ կապիտան Ռուբիկ Հովհաննիսյանը, որը հոր զորամասում մարտկոցի հրամանատար է:

Հովհաննիսյանի հրետանավորներն իրենց անմահացրին Օրյոլ-Կուրսկի նշանավոր ճակատամարտում:

Հովհաննիսյանի հրետանավորները արյունահեղ մարտերով Օրյոլից հասան Լվով, Պերեմիշլ, Յարոսլավլ քաղաքներին և ապա, թշնամուն կրկնակի հետապնդելով, մտան Լեհաստանի տերիտորիան:

Կարմիր Բանակի հունվարյան սրընթաց հարձակման ժամանակ մեր մյուս զորամասերի հետ հրետանու գեներալ-մայոր Հովհաննիսյանի հրետանավորները Լեհաստանի տերիտորիայի ամբողջ լայնությամբ մարտերով անցան Պշեդբուժ և Ռադոմսկո քաղաքների վրայով և մտան գերմանական Կրայցբուրգ, Ռոզենբերգ, Պլոշեն, Լանդսբերգ, Գուտտենբերգ և Օպպելն քաղաքները:

Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի հրամաններում հինգ անգամ հանդիպել ենք հրետանու գեներալ-մայոր Նիկոլայ Հովհաննիսյանի անվան:

Հերոս հրետանավորի կուրծքին շողշողում է 9 շքանշան և 3 մեդալ:

Գեներալ Նիկոլայ Հովհաննիսյանը ծնվել է 1901 թվին Սուրմալուի շրջանի Բահարլու գյուղում: 17 տարի ծառայել է Հայկական դիվիզիայում, ստացել է զանազան պատասխանատու պաշտոններ: Պարտիայի անդամ է 1920 թվից: Ավարտել է Ֆրունզեի անվան Ռազմական Ակադեմիան:






Գեներալ-մայոր Ք. ԱԼԱՎԵՐԴՅԱՆ, գեներալ-մայոր Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ




Հրետանու գեներալ-մայոր Գ. ՉԱՅԼԱԽՅԱՆ, գեներալ-մայոր Գ. ՏԵՐ-ԳԱՍՊԱՐՅԱՆ

## 15. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍ, ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԱՍՔԱՆԱԶ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Ասքանազ Գևորգի Կարապետյանը ծնվել է 1900 թվին, Սուրմալուի գավառի Էվջիլար գյուղում, չքավոր գյուղացու ընտանիքում: Տարրական կրթությունը ստացել է գյուղում: 1918 թվին նրան պարտադիր զինվորական ծառայության համար կանչում են բանակ, որի շարքերում նա մասնակցում է Սարիղամիշի հայտնի մարտերին և աչքի է ընկնում իր խիզախությամբ: 1920 թվին ակտիվ մասնակցել է Ղարսի ապստամբությանը, այդ օրերին էլ մտել է Լենին-Ստալինի պարտիայի շարքերը: Հայաստանում Սովետական կարգեր հաստատվելուց հետո ընդունվում է Երևանի Մյասնիկյանի անվան ռազմական դպրոցը: Նա դպրոցն ավարտում է գերազանց գնահատականով: Որպես բանիմաց և շնորհալի սպայի, նրան դպրոցում պահում էին իբրև դասատու: Ընկեր Ասքանազ Կարապետյանը 17 տարի ծառայել է Վորոշիլովի անվան Հայկական դիվիզիայում, վարել է շատ պատասխանատու պաշտոններ: Հետագայում նա ավարտում է Մոսկվայի Ֆրունզեի անվան Ռազմական ակադեմիան:

Ընկեր Կարապետյանի զորամասը ակտիվ կերպով մասնակցել է Կարմիր Բանակի հարձակողական մարտերին, մահու և կենաց կռիվներ է մղել Կովկասի համար մղվող մարտերում: Ասքանազ Կարապետյանի զորամասը մասնակցել է Ռոստով, Տագանրոգ, Մելիտոպոլ քաղաքների և Դոնբասի ազատագրմանը: Նրա զորամասը առաջիններից մեկն էր, որ ճեղքեց գերմանացիների պաշտպանության գիծը Մելիտոպոլի մոտ, մտավ այդ քաղաքը և կռվեց քաղաքի լիակատար ազատագրման համար:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը գնահատելով Ասքանազ Կարապետյանի ցուցաբերած արիության ու սխրագործությունների համար նրան



շնորհել է Սովետական Միության Հերոսի կոչում: Շուտով նա ստացավ գեներալ-մայորի կոչում:

Գեներալ-մայոր Կարապետյանի դիվիզիան զարգացնելով հաջող հարձակումը, Կարմիր Բանակի մյուս զորամասերի հետ ճեղքեց գերմանա-ռումինական զորքերի Պերեկոպի խիստ ամրացված պաշտպանությունը, մտավ Ղրիմ: Նա Սևաստոպոլ քաղաքի ազատարարներից է:

## 16. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՔՐԻՍՏԱՓՈՐ ԱԼԱՎԵՐԴՅԱՆ

Կարմիր Բանակի հին գեներալներից է Քրիստափոր Նիկողոսի Ալավերդյանը: Նա ծնվել է 1896 թվին, լեռնային Հայաստանում, Ալեքսանդրապոլի շրջանի Օղբին գյուղում: 1915 թվից մինչև այժմ նա գտնվում է բանակում: Քաղաքացիական կռիվների ժամանակ շարքային բանակայինից դարձավ վաշտի հրամանատար և 1917 թվի աշնանը ընդունվեց բոլշևիկյան պարտիայի անդամ: 1920—21 թվերին սովորում ու ավարտում է Մոսկվայի ռազմական դպրոցը: Նորավարտ սպան գալիս է Հայաստան, նշանակվում Հայկական դիվիզիայի հեծյալ գնդում էսկադրոնի հրամանատար: Այդ ժամանակ նույն գնդում մեկ ուրիշ էսկադրոնի հրամանատար էր, այժմ բանակի գեներալ Իվան Բաղրամյանը: Շուտով ընկ. Բաղրամյանը նշանակվում է հեծյալ գնդի հրամանատար և յոթը տարի ղեկավարում Լենհեծգունդը:

Ընկեր Ալավերդյանը 4 տարի գնդի հրամանատարի պաշտոնը վարելուց հետո, 1936 թվին գնում է Մոսկվա, սովորում և ավարտում Կարմիր Բանակի գլխավոր շտաբի Ակադեմիան: Ակադեմիան ավարտելուց անմիջապես հետո 1940 թվին Քրիստափոր Ալավերդյանին շնորհվում է գեներալ-մայորի կոչում:

Գեներալ Ալավերդյանի զորքերը 1940 թվին ակտիվ մասնակցություն են ցույց տալիս Վիբորգ քա-

ղաքը գրավելու գործում: Նրա ցուցաբերած խիզախության ու ռազմական հմտության համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահությունը ընկ. Ալավերդյանին պարգևատրում է Կարմիր Դրոշի շքանշանով:

Հայրենական պատերազմի օրերին ընկ. Ալավերդյանը հերոսաբար մարտնչում է գերմանա-ֆաշիստական ավազակների դեմ մղվող մարտերին:

## 17. ԳՎԱՐԴԻԱՅԻ ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՍԵՐԳԵՅ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Գվարդիայի գեներալ-մայոր Սերգեյ Կարապետյանը ծնվել է 1902 թվին Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղում: Նա իր ռազմական մկրտությունը ստանում է Վորոշիլովի անվան լեռնա-հրաձգային Հայկական դիվիզիայում: 12 տարի ծառայել է նույն դիվիզիայի լեռնահեծընդում, որից 7 տարի Իվան Բաղրամյանի հետ, երբ նա գնդի հրամանատար էր: Սկզբում եղել է էսկադրոնի հրամանատար, ապա գնդի շտաբի պետ:

Ընկ. Կարապետյանը գերազանց գնահատականով ավարտում է Կիևի հեծելազորային ռազմական դպրոցը և Մոսկվայի Ֆրունզեի անվան ռազմական Ակադեմիան:

1942 թվի գարնանը, Խարկով և Կուպյանսկ քաղաքները միացնող ճանապարհների վրա տեղի ունեցավ մի ճակատամարտ, որը Հայրենական պատերազմի պատմության մեջ կմնա որպես ամենակատաղի ու արյունահեղ ճակատամարտերից մեկը:

Ճակատամարտն ավարտվեց գերմանական ընտիր զորամասերի լիակատար ջախջախումով և ռազմաճակատի այդ հատվածում տապալվեց գերմանացիների գարնանային հարձակումը:

Ճակատամարտն իր ռազմական փայլուն ավարտին հասցրեց այն դյուցազնական դիվիզիան, որի հրամանատարն էր գնդապետ Սերգեյ Կարապետյանը: Նա






Հրետանու գեներալ-մայոր Ն. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ, հրետանու գեներալ-մայոր Կ. ՀԱԽՆԱԶԱՐՅԱՆ




Բժշկական ծառայության գեներալ-մայոր Ա. ԲՈՒՌՆԱԶՅԱՆ, գեներալ-մայոր Բ. ԱՌՈՒՇԱՆՅԱՆ

իր խիզախ արշավանքներով Կարմիր Բանակի նշանա-
վոր զորավարներից մեկն է դարձել: Այդ ժամանակ
էլ նրան շնորհվում է գեներալ-մայորի զինվորական
կոչում:

Գեներալ Կարապետյանի զորամասը Մերձբալթյան
3-րդ ռազմաճակատի զորքերի հետ, արյունահեղ
մարտեր մղեց սովետական Լատվիան և Էստոնիան
գերմանա-ֆաշիստական հորդաներից ազատագրելու
համար: Գեներալ-մայոր Սերգեյ Կարապետյանի անու-
նը շատ անգամ ենք լսել մեծ Ստալինի հաղթական
հրամաններում: Նրա հպարտ կրծքին փայլում են Կար-
միր Դրոշի, Սուվորովի, Կուտուզովի, Բոգդան Խմել-
նիցկու շքանշանները:

## 18. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԲԵՆԻԱՄԻՆ ԳԱԼՍՏՅԱՆ

Սովետական ամբողջ երկիրը գիտե Լենինգրադի
մարտերի հերոս—դյուցազուն գեներալ-մայոր Բենիա-
մին Գալստյանի պանծալի անունը:

Դուզքենդի շրջանի Ճլոխան գյուղում, ծայրահեղ
չքավոր գյուղացու ընտանիքում է ծնվել Բենիամին
Գալստյանը: Բենիամինը մինչև 21 տարեկան հասակը
բատրակություն է արել Լենինականում և նրա շրջա-
կա գյուղերում: 1923 թվին հերթական ծառայության
համար կանչվում է Կարմիր Բանակ: Հայկական դի-
վիզիայում դառնում է գրագետ, սովորում և ավար-
տում է հեծյալ գնդի դպրոցը և Երևանի Մյասնիկյա-
նի անվան ռազմական դպրոցը ու ստանում քաղղեկի
կոչում: Երիտասարդ սպան նշանակվում է 2-րդ գնդի
վաշտերից մեկի քաղղեկ: Նա ընտրվում է նույն գնդի
պարտբյուրոյի քարտուղար: Բենիամին Գալստյանը
երկար ժամանակ մի շարք պատասխանատու պաշտոն-
ներ է վարում Հայկական դիվիզիայում, ապա աստի-
ճանաբար բարձրանում է նրա կոչումը ու պաշտոնը:

Հայրենական պատերազմի առաջին իսկ օրվանից



բրիգադայի կոմիսար Բենիամին Գալստյանը իբրև N
բանակի ռազմական խորհրդի անդամ, հյուսիս-արև-
մտյան ռազմաճակատում ակտիվ մասնակցում է գեր-
մանա-ֆաշիստական հորդաների դեմ մղվող կատաղի
կռիվներին: 1942 թվի աշնանը նրան շնորհվում է
գեներալ-մայորի զինվորական կոչում:

Ռևոլյուցիայի օրրան Լենինգրադ քաղաքի համար
մղվող մարտերի ժամանակ Գալստյանն ընկավ հերոսի
մահով:

## 19. ԳՎԱՐԴԻԱՅԻ ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՀԱՅԿ ԹՈՒՄԱՆՅԱՆ

Հայկ Թումանյանը Լոռու Դսեղ գյուղացի է: Նա
ծնվել է 1901 թվին: 7-ամյա կրթությունը ստացել է
Թբիլիսիում: Հոկտեմբերյան Սոցիալիստական Ռևոլյու-
ցիայի նախօրյակին 17 տարեկան Հայկը գտնվում է
բոլշևիկյան պարտիայի շարքերում: Նա ակտիվ մաս-
նակցում է Թբիլիսիի բոլշևիկյան կազմակերպության
ընդհատակյա աշխատանքներին: 1919 թվին մենշևիկ-
ները կոմունիստ Հայկ Թումանյանին ութը ամիս
բանտարկում են Թբիլիսիի, Մետեխի և Քութայիսի
բանտերում: 1920 թվին բանտից ազատվում ու գնում
է Սովետական Ռուսաստան և անցնում պարտիական
աշխատանքի: Մոսկվայի Սվերդլովի անվան կոմու-
նիստական համալսարանը ավարտելուց հետո 1924
թվին պարտիան նրան ուղարկում է Կարմիր Բանակ
պարտիական աշխատանքի: Նա երկար ժամանակ աշ-
խատում է Հյուսիսային Կովկասի զինվորական օկրու-
գի քաղաքական վարչությունում, ապա նշանակվում
է Կրասնոդարի հեծյալ դպրոցի կոմիսար: 1929 թվին
գերազանց գնահատականով ավարտում է Ֆրունզեի
անվան Ռազմական ակադեմիան: Ակադեմիան ավար-
տելուց հետո նա նշանակվում է ԲԳԿԲ դիվիզիոնի շտաբի

վարչություններից մեկում պատասխանատու աշխատանքի:

Հայրենական պատերազմի առաջին օրերին բրիգադային կոմիսար Թումանյանը խոշոր աշխատանք է կատարում Բելոռուսիայում պարտիզանական ջոկատներ կազմակերպելու գործում: Այնտեղ նա տեղափոխվում է Լենինգրադի մարզ, ղեկավարում ժողովրդական վրիժառուների լենինգրադյան 4-րդ գունդը: Երկար ժամանակ պաշտպանում է Լենինգրադի հեռավոր մատույցները: Այստեղից էլ ընկ. Թումանյանին նշանակում են N կորպուսի կոմիսար և ապա N տանկային բանակի ռազմական խորհրդի անդամ: Այս հերոսական զորամասի հետ միասին նա արյունահեղ մարտերով անցնում է Ստալինգրադից մինչև Բուխարեստ և ապա մտնում գերմանական քաղաքներն ու գյուղերը:

## 20. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՀԱՅԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

1903 թվին Բաքվում, նավթագործ բանվորի ընտանիքում է ծնվել գեներալ-մայոր Հայկ Մարտիրոսյանը: Տարրական կրթությունը ստացել է նավթարդյունաբերական արհեստագործական դպրոցում: Նա 13 տարեկան հասակից սկսում է սևագործ բանվորություն անել Բալախանիում:

Հայաստանում սովետական իշխանության հաստատվելուց հետո, ընտանիքի հետ տեղափոխվում է Երևան, կամավոր ընդունվում է Կարմիր Բանակի շարքերը: 1922 թվի վերջում նրան ուղարկում են Թբիլիսիի ռազմա-քաղաքական դպրոցում սովորելու: 1925 թվին ավարտում է դպրոցը, գալիս Երևան և նշանակվում Հայկական դիվիզիայի առաջին գնդում վաշտերից մեկի քաղղեկ: Հայկը շուտով անցնում է հրամանատարական աշխատանքի, դառնում վաշտի հրամանատար: Մոսկվայի ռազմական օկրուգում նա



արդեն գումարտակի հրամանատար էր և ապա դիվիզիայի շտաբի բաժիններից մեկի պետ: 1936 թվին Մոսկվայի Ֆրունզեի անվան Ռազմական ակադեմիան ավարտելուց հետո, նրան ուղարկում են Հեռավոր Արևելք Առաջին Կարմրադրոշ Բանակը: Ընկ. Մարտիրոսյանը այնտեղ եղել է հրաձգային դիվիզիայի օպերատիվ բաժնի պետ, դիվիզիայի շտաբի պետ, ապա 1938 թվին գնդապետ Հայկ Մարտիրոսյանը դառնում է նույն դիվիզիայի հրամանատար:

Գնդապետ Մարտիրոսյանի դիվիզիան վճռական մասնակցություն է ունեցել Խասանի կռիվներին:

Հայկ Մարտիրոսյանը իր դիվիզիայով Հայրենական պատերազմի արևմտյան ռազմաճակատ է մտնում: Նրա դիվիզիան ակտիվ մասնակցել է Պլավսկ, Տյոպլոյե, Օրյոլ, Կոզելսկ, Սուխինիչի, Մեշչովսկի քաղաքների ու հարյուրավոր այլ բնակավայրերի ազատագրմանը: Այդ օրերին՝ 1943 թվի սեպտեմբերին Հայկ Հովհաննեսի Մարտիրոսյանին շնորհվում է գեներալ-մայորի զինվորական կոչում:

## 21. ՀՐԵՏԱՆՈՒ ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԿԱՐԱՊԵՏ ՀԱԽՆԱԶԱՐՅԱՆ

Հրետանու գեներալ-մայոր Կարապետ Հախնազարյանը ծնվել է 1894 թվին, Ղամարլուի շրջանի Արտաշատ գյուղում: Սկզբնական կրթությունը ստացել է Դվինի երկդասյան դպրոցում, իսկ միջնակարգ կրթությունը ստացել է Երևանում: 1915 թվին կանչվում է բանակ, սովորում ու ավարտում է Թբիլիսիի [illegible] դպրոցը: Երիտասարդ սպան, որպես վաշ-

ու հրամանատար մեկնում է ռազմաճակատ: Սոցիալիստական մեծ ռեվոլյուցիայի օրերին նա անցնում է նոր կազմակերպված Կարմիր Բանակի կողմը և մեծ ջանասիրությամբ կռվում սոցիալիստական Հայրենիքի համար Սովետական Ռուսաստանի տափաստաններում:

Ընկ. Կարապետ Հախնազարյանը 13 տարի շարունակ զանազան պատասխանատու պաշտոններ է վարել Վորոշիլովի անվան Հայկական լեռնա-հրաձգային դիվիզիայում: Հրետանային գնդում եղել է մարտկոցի հրամանատար, գնդի շտաբի պետ: Փոխգնդապետ Հախնազարյանին տեղափոխում են Թբիլիսի և նշանակում հրետանային դպրոցի դասախոս ու ուսումնական մասի պետ: Այս բանիմաց հրետանավորը 1940 թվին ավարտում է Լենինգրադի Հրետանային ակադեմիան:

Հայրենական պատերազմի առաջին իսկ օրերից նա եղել է կռվի դաշտում, Գնդապետ Հախնազարյանին վիճակվում է Սմոլենսկ քաղաքից արևմուտք կռվի դուրս գալ գերման-ֆաշիստական զորքերի դեմ: Փորձված հրամանատարի հրետանավորները երկար ժամանակ պողպատե պատնեշի նման կանգնում են քաղաքի վրա հարձակվող հիտլերյան լաչառական զորքերի դեմ, տեխնիկայի ու կենդանի ուժի մեծ կորուստ պատճառում թշնամուն: Հետագայում նա իր հրետանավորներով կործանիչ հարված է հասցնում թշնամուն Օրյոլի և Կուրսկի ազատագրման ժամանակ:

Գոմել, Վիտեբսկ, Պոլոցկ, Շաուլյայ, Իելգավա քաղաքների ազատագրման համար մղված մարտերում գեներալ Հախնազարյանի զորամասը Կարմիր Բանակի այլ զորամասերի հետ միասին անցել է փառավոր ուղի և ջախջախել գերմանական զավթիչներին:

ՍՍՌՄ կառավարությունը, բարձր գնահատելով






Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, ինժեներա-հրետանային ծառայության գեներալ-մայոր Հ. ՅՈԼՅԱՆ, գեներալ-մայոր Բ. ԳԱԼՍՏՅԱՆ




Բժշկական ծառայության գեներալ-մայոր Ա. ՔՈՒՇՆԱՐՅԱՆ, արդարադատության գեներալ-մայոր Գ. ՕՀԱՆՋԱՆՅԱՆ

Կարապետ Հախնազարյանի ռազմական փորձը և մարտ վարելու վարպետությունը, նրան շնորհեց հրետանու գեներալ-մայորի զինվորական կոչում:

## 22. ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՀՄԱՅԱԿ ԲԱԲԱՅԱՆ

Գեներալ-մայոր Հմայակ Գրիգորի Բաբայանը կապանցի է: Նա ծնվել է 1904 թվին, տարրական կրթությունը ստացել Կապանում: 1921 թվին կամավոր ընդունվում է Կարմիր Բանակի Հայկական դիվիզիայի 2-րդ գունդը: 1923 թվին ընդունվում է Երևանի Մյասնիկյանի անվան ռազմական դպրոցը: Այդ ժամանակ նրա դասընկերներն են եղել այժմյան անվանի գեներալ Անդրանիկ Ղազարյանը, Աշոտ Կարապետյանը: Ռազմական դպրոցն ավարտելուց հետո ընկ. Բաբայանը 11 տարի շարունակ պատասխանատու աշխատանքներ է կատարում Վորոշիլովի անվան Հայկական լեռնա-հրաձգային դիվիզիայում: Սովորում ու ավարտում է Մոսկվայի Ֆրունզեի անվան Ռազմական ակադեմիան:

Գնդապետ Հմայակ Բաբայանը Հայրենական պատերազմ մտավ իբրև հրաձգային դիվիզիայի հրամանատար: Նրա ղեկավարությամբ դիվիզիան ակտիվ մասնակցեց Օրյոլ և Կուրսկ քաղաքների համար մղված արյունահեղ ու անմոռանալի կռիվներին: Գնդապետ Բաբայանը իր դյուցազնական դիվիզիայով անցնում է փառահեղ մարտական ուղի՝ Օրյոլից մինչև Կաունաս: Բելոռուսական 3-րդ ռազմաճակատի զորքերի հետ 1944 թվի հուլիսի 13-ին երկու դասընկերներ՝ Սովետական Միության Հերոս՝ գեներալ-մայոր Անդրանիկ Ղազարյանը և գեներալ-մայոր Հմայակ Բաբայանը առաջիններից մեկը մտան Վիլնյուս քաղաքը, իսկ օգոստոսի 1-ին նրանք դարձյալ առաջինը մտան Կաունաս քաղաքը և բերդը:



Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի հրամաններում չորս անգամ նշվել է արևավառ Հայաստանի զավակ, ութ շքանշաններով պարգևատրված գեներալ-մայոր Հմայակ Բաբայանի անունը:

## 23. ՀՐԵՏԱՆՈՒ ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԳԵՎՈՐԳ ՋԱՅԼԱԽՅԱՆ

Հրետանու գեներալ-մայոր Գևորգ Ջայլախյանը ծնվել է 1897 թվին Նոր Նախիջևանում, ծառայողի ընտանիքում: 1916 թվին ավարտում է Նովոչերկասկի գիմնազիան ու գնում Պետրոգրադ և առաջին կարգի կամավորի իրավունքով ընդունվում Միխայլովյան գունդը: 1917 թվին սովորում ու ավարտում է Կոնստանտինովյան հրետանային ուսումնարանը, ստանում պրապորշչիկի աստիճան, նշանակվում 12-րդ սիբիրյան հրետանային բրիգադայի մարտկոցի հրամանատար, մեկնում Հարավ-արևմտյան ռազմաճակատ գերմանացիների դեմ կռվելու: Միառժամանակ հետո ընկ. Ջայլախյանին տեղափոխում են Կովկաս ազգային զորամասում աշխատելու: Իր մարտկոցով Կարմիր Բանակի կողմն անցած նա ակտիվ մասնակցություն է ունենում Հայաստանը դաշնակներից ազատագրելու պատմական ճակատամարտերին: Հայկական ՍՍՌ կառավարությունը նրան պարգևատրում է Կարմիր Դրոշի շքանշանով:

Հայաստանում սովետական իշխանություն հաստատվելուց հետո ընկ. Գևորգ Ջայլախյանը 14 և կես տարի ծառայել է Վորոշիլովի անվան Հայկական դիվիզիայի հրետանային գնդում սկզբում որպես դասակի հրամանատար, մարտկոցի հրամանատար, դիվիզիոնի հրամանատար, նույն հրետանային գնդի

հրամանատար և ապա առաջ է քաշվում ու նշանակվում Հայկական դիվիզիայի հրամանատարի տեղակալ ու հրետանու պետ: Այդ տարիներին՝ 1935 թվին ընկ. Զայլախյանը ընտրվում է Հայկական ՍՍՌ Կենտրոնական Գործադիր Կոմիտեի անդամ: Ավարտում է Մոսկվայի հրամկազմի կատարելագործման բարձրագույն հրետանային դասընթացները:

Հայրենական պատերազմի նախօրյակին ընկ. Զայլախյանը Լվովի ռազմական օկրուգում հրամանատարության հատուկ հանձնարարությունները օրինակելիորեն կատարեց և ապա իր զենիթային հրետանիով գործոն մասնակցություն ունեցավ Լվով, Զլոչով, Տարնոպոլ քաղաքների համար մղվող մարտերին: Հակաօդային պաշտպանության վարպետ գնդապետ Զայլախյանին կանչում են Մոսկվա և նշանակում Կարմիր Բանակի ՀՕՊ-ի բարձրագույն ռազմական դպրոցում երկրի տերիտորիալ հակաօդային պաշտպանության տակտիկայի ամբիոնի պետ և դասատու, Հայրենիքի համար հակաօդային պաշտպանության նոր և որակյալ կադրեր պատրաստելու:

Հիտլերյան ավազակները ձգտում էին դեպի Սովետական Միության մարգարիտ՝ Կովկաս, նրանք սպառնում էին Ադրբեջանին, Վրաստանին և Հայաստանին: Այդ ծանր օրերին ընկ. Զայլախյանին տեղափոխում և նշանակում են Անդրկովկասյան ռազմաճակատի հակաօդային պաշտպանության պետ: Անդրկովկասյան և Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի հակաօդային պաշտպանության գործը հմտորեն կազմակերպելու համար, նա պարգևատրվել է Կարմիր Դրոշի, Հայրենական պատերազմի առաջին աստիճանի և Կարմիր Աստղի շքանշաններով:

ՍՍՌՄ Ժողկոմսովետը իր 1943 թվի սեպտեմբերի 2-ի որոշմամբ գնդապետ Գևորգ Զայլախյանին շնորհեց հրետանու գեներալ-մայորի զինվորական կոչում:



## 24. ԻՆԺԵՆԵՐԱ-ՀՐԵՏԱՆԱՅԻՆ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ՀԱՄՈ ՑՈԼՅԱՆ

Սոցիալիստական Աշխատանքի Հերոս, ինժեներա-հրետանային ծառայության գեներալ-մայոր Համո Սերգոյի Ցոլյանը ծնվել է 1906 թվին Գորիս քաղաքում: Տարրական կրթությունն ստացել է Գորիսում, իսկ միջնակարգ կրթությունը Շուշի քաղաքի ռեալական դպրոցում: Դպրոցն ավարտելուց հետո ընկ. Ցոլյանը գնում է Բաքու, երկար ժամանակ նավթահանքերում աշխատում, սկզբում որպես բանվոր և ապա վարպետ: Այստեղ էլ ընդունվում է Լենինի-Ստալինի պարտիայի շարքերը: Շուտով նա դառնում է անվանի մասնագետ: Բացառիկ տաղանդի տեր Ցոլյանին տեսնում ենք Մոսկվայում տեխնիկական բարձրագույն կրթություն ստացած և խոշոր գործարաններից մեկի ցեխի պետ: Նա այստեղ ևս ցուցաբերում է կարող ու ունակ մասնագետի, արտադրության նովատորի ընդունակություն: Շատ շուտով նա իր վրա է հրավիրում սովետական պետական գործիչների ուշադրությունը: Ընկ. Սերգո Օրջոնիկիձեի միջամտությամբ Ցոլյանին գործուղում են Ամերիկա, կատարելագործվելու: Երկու տարի Ամերիկայում սովորելուց հետո ընկ. Ցոլյանը վերադառնում է Մոսկվա, նրան նշանակում են գիգանտ գործարաններից մեկի դիրեկտոր: Նա փայլուն կերպով արդարացրեց սովետական ղեկավարների հույսերը: Նրա անմիջական ղեկավարությամբ շատ միջոցառումներ նախաձեռնվեցին սոցիալիստական գործարանի տեխնիկական պրոցեսների բարելավման, աշխատանքի արտադրողականության բարձրացման ու արտադրանքի ինքնարժեքի իջեցման գործում:

Հայրենական պատերազմի առաջին իսկ օրից նրա ղեկավարած գործարանը առանց հապաղումի, սկսեց թողարկել նոր արտադրանք: Շնորհիվ արտադրու-

թյան հրամանատար Ցոլյանի կազմակերպչական ընդունակություն և անսասան եռանդի, փայլուն կերպով կազմակերպվեց Կարմիր Բանակին ավելի շատ ու բարձր որակի սպառազինություն տալու գործը: Ցոլյանի ղեկավարած գործարանը Հայրենական պատերազմի տարիներին անընդհատ բարձրացրել է աշխատանքի արտադրողականությունը և թողարկվող արտադրանքի քանակն ու որակը, քան անցած ամիսներին է թողարկվող արտադրանքի քանակը:

Սովետական կառավարությունը բարձր գնահատեց պատերազմական ժամանակի դժվարին պայմաններում, Կարմիր Բանակի սպառազինման գործում ընկ. Համո Ցոլյանի հատուկ ծառայությունը, նրան 1942 թվի աշնանը շնորհեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում:

ՍՍՌՄ Ժողկոմսովետը իր 1944 թվի նոյեմբերի 18-ի որոշմամբ Համո Սերգեյի Ցոլյանին շնորհում է ինժեներա-հրետանային ծառայության գեներալ-մայորի զինվորական կոչում:

## 25. ԱՐԴԱՐԱԴԱՏՈՒԹՅԱՆ ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԳՈՒՐԳԵՆ ՕՀԱՆՋԱՆՅԱՆ

Արդարադատության գեներալ-մայոր Գուրգեն Օհանջանյանը միջնակարգ կրթություն ստացել է Երևանի գիմնազիայում: 1919 թվին նա ընդունվում է Լենին-Ստալինի պարտիայի շարքերը: 1921 թվին ընտրվում է պարտիայի Սևանի շրջկոմի քարտուղար: Օհանջանյանը 1921 թվին ուղարկվում է սովորելու: Սովորում և ավարտում է Մոսկվայի Պետական համալսարանի իրավաբանական ֆակուլտետը: Պարտիան նորավարտ Օհանջանյանին մոբիլիզացնում և ուղարկում է Կարմիր Բանակ, որտեղ նրան նշանա-



կում են Հայկական դիվիզիայի դատախազ: Երկու տարի աշխատելուց հետո նրան առաջ են քաշում Անդրկովկասյան զինվորական օկրուգի դատախազի տեղակալ: Եռանդուն և ընդունակ այդ ռազմա-իրավաբանական գործում անընդհատ առաջադիմում է: Նա երկար ժամանակ աշխատում է սկզբում Լենինգրադի և ապա Մոսկվայի զինվորական օկրուգի զինվորական դատախազի տեղակալի պաշտոնում, ապա մենք նրան 1935—37 թ. թ. տեսնում ենք նորից Կովկասում Անդրկովկասյան զինվորական օկրուգի զինվորական դատախազի պաշտոնում և այնուհետև նա երկար ժամանակ աշխատեց ԲԳԿԲ կենտրոնական դատախազությունում:

Հայրենական պատերազմի առաջին իսկ օրից մինչև հիմա Գուրգեն Օհանջանյանը գտնվում է ռազմաճակատում:

1943 թվի աշնանը ՍՍՌՄ Ժողկոմսովետը Գուրգեն Հովհաննեսի Օհանջանյանին շնորհել է արդարադատության գեներալ-մայորի զինվորական կոչում:

## 26. ԲԺՇԿԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ԳԵՆԵՐԱԼ-ՄԱՅՈՐ ԱՎԵՏԻՔ ԲՈՒՌՆԱԶՅԱՆ

Բժշկական ծառայության գեներալ-մայոր Ավետիք Բուռնազյանը ծնվել է 1905 թվին Նոր Բայազետում: 1924 թվին նա գալիս է Երևան, ընդունվում Պետական համալսարանի բժշկական ֆակուլտետը, որը և ավարտում է 1928 թվին: Իբրև զորակոչիկ նրան ուղարկում են Լենինգրադի Ռազմա-բժշկական ակադեմիա սովորելու: Այդ օրվանից էլ նա զինվորագրվեց ԲԳԿԲ-ին: Ակադեմիան ավարտելուց հետո, Բուռնազյանին նշա-

նակվում են Մինսկ, որպես զինվորական բժիշկ:

Բոլշևիկ Բունիաթյանը իր գիտությունը, ուժն ու եռանդը ի սպաս է դրել Հարազատ Կարմիր Բանակի ամրապնդմանը:

Հայրենական պատերազմի առաջին իսկ օրից փորձառու բժիշկ Ավետիք Բունիաթյանը մեկնեց հյուսիս-արևմտյան ռազմաճակատ իբրև N բանակի սանիտարական բաժնի պետ:

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված ահեղ կռիվների օրերի մեջ Բունիաթյանը մշակեց բուժման նոր մեթոդներ, նոր եղանակներ: Նա միշտ օրինակելիորեն է կատարել հրամանատարության առաջադրանքները: Պարգևատրվել է Կարմիր Դրոշի երկու, Հայրենական պատերազմի 1-ին աստիճանի և Կարմիր Աստղի շքանշաններով:



Կարմիր Բանակի հայ գեներալների թիվը սրանով չի սպառվում: Հայրենական պատերազմում նրանց կատարած սխրագործությունները անհամար են:

Կարմիր Բանակը և հայ ժողովուրդը հպարտանում են ՍՍՌՄ Սպառազինության ժողովրդական կոմիսարի տեղակալ, ինժեներա-հրետանային ծառայության գեներալ-մայոր Իլարիոն Միրզախանյանի, ինժեներա-հրետանային ծառայության գեներալ-մայոր Հմայակ Հախնազարյանի, տեխնիկական զորքերի գեներալ-մայոր Սուրեն Գասպարյանի, N զորամասի հրամանատար գեներալ-մայոր Արտակ Վարդանյանի, ինտենդանտական ծառայության գեներալ-մայոր Արտաշես Գրիգորյանի, բժշկական ծառայության գե-



ներալ-մայոր Արտուր Բուշնարյանի, ինժեներա-ավիացիոն ծառայության գեներալ-մայոր Սուրեն Օհանջանյանի, ինժեներա-տանկային ծառայության գեներալ-մայոր Անդրանիկ Պետրոսյանի պայծառ անուններով, որոնք իրենց ուժն ու եռանդը ի սպաս են դրել մեր մեծ և հզոր սովետական Հայրենիքի անկախության ու բարօրության գործին:

ԱՐՄՈ ՄԱԼԽԱՍՅԱՆ

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԱՅ ՀԵՐՈՍՆԵՐԸ

## 1. ԳՎԱՐԴԻԱՅԻ ՓՈԽԳՆԴԱՊԵՏ ՆԵԼՍՈՆ ՍՏԵՓԱՆՅԱՆ

Մրրկահավ,— այսպես են անվանում գվարդիայի փոխգնդապետ Նելսոն Ստեփանյանին: Նա Կարմրադրոշ Բալթիկայի և Սև ծովի կապույտ երկնակամարով ճախրող այն խիզախ օդաչուներից մեկն է, որը գերմանական զավթիչների դեմ մղվող կռիվներում արժանացել է Սովետական Միության Հերոսի կոչման: Բացի այդ, նա պարգևատրվել է Լենինի, երկու Կարմիր դրոշի շքանշաններով և երկու մեդալներով:

Բալթիկան և Լենինի մեծ քաղաքը Նելսոնը սիրում է նույն ջերմությամբ, ինչպիսի ջերմությամբ՝ հարազատ Երևանը: Մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաքում է աճել և դաստիարակվել օդաչու Նելսոնը: Նրա սխրագործությունների համառոտ պատմությունը տվել է բանաստեղծ Ն. Զարյանն իր «Ցասման տավիղը» վերնագրով գրքում:

Ն. Ստեփանյանը Հայրենական պատերազմի ճակատներում այնպիսի հրաշքներ է գործել, որ մեր դարավոր առասպելներն անգամ իրենց երևակայական կտրիճներով նսեմանում են նրանց առջև:

Սովետական Միության Հերոս Նելսոն Ստեփանյանի երկու և կես տարվա անձնական հաշվում նշված է գերմանական 600 ավտոմեքենայի, 1.000 տանկի,



զենիթային 300 թնդանոթի, 6 նավի, հարյուրավոր ինքնաթիռների ոչնչացման մասին: Իսկ թե որքան է ոչնչացրել 1944 թվին Բալթիկայում և Ղրիմում, այդ դժվար է հաշվել:

Սովետական Միության Հերոս Նելսոն Ստեփանյանը մեծ ժողովրդականություն է վայելում, և ի նշան այդ ամենի՝ տասնյակ բանաստեղծություններ, երգեր և քանդակներ են նվիրվել հաղթող բազեին:

## 2. ԱՎԱԳ ԼԵՅՏԵՆԱՆՏ ՍԵՐԳԵՅ ԲՈՒՌՆԱԶՅԱՆ

Ավագ լեյտենանտ Սերգեյ Բուռնազյանի մարտական կյանքի ուղին սկսվել է 1936 թվից, երբ նա առաջին անգամ ընդունվել է Երևանի Աէրոակումբին կից օդաչուական դպրոցը: Հայրենասեր կոմերիտականը պատանի հասակից օր ու գիշեր ուսումնասիրում էր սովետական ինքնաթիռի մասերը, տիրապետում թռիչքի ձևերին: 1937 թվին հաջողությամբ ավարտելով դպրոցը, նա ինքնուրույն թռչելու իրավունք ստացավ: 1938 թվին Սերգեյ Բուռնազյանը որպես գերազանց թռչող գործուղվում է Խերսոնի օդաչուական դպրոցը: Այստեղ նա շատ ու շատ բան սովորեց: Հայրենական պատերազմի առաջին իսկ օրերից Բուռնազյանը մեկնում է ռազմաճակատ: Այդ ժամանակ նա իր կյանքի 25 տարին էր բոլորել: Կարճ ժամանակամիջոցում ձեռք բերեց ռազմաճակատի փորձված և խիզախ օդաչուի համբավ, մշակեց օդային կռվի իր ինքնուրույն մեթոդներն ու ձևերը, մարտական գործողությունների կանոնները: Օդաչու Բուռնազյանը կարողանում էր խորապես թափանցել մարտի էության մեջ, նկատել «աննկատելին», կայծակի արագությամբ կողմնորոշվել ստեղծված բարդ իրադրության մեջ և գտնել հաղթանակի ճիշտ ուղին:

Այս բոլորն առաջին անգամ նա դրսևորեց Սևաստոպոլի հերոսական պաշտպանության օրերին, իսկ հետագայում հարազատ Ուկրաինայի համար մղված մեծ դյուցազնամարտերի կրակի ու բոցերի մեջ:

Շարքային օդաչուից նա աճեց և դարձավ էս-կադրիլիայի հրամանատար: Նա պարգևատրվեց կա-ռավարության չորս շքանշաններով՝ Լենինի, երկու Կարմիր դրոշի և Հայրենական պատերազմի: Անձնա-կան համարձակությունը, խիզախությունը, անձնա-կան հերոսությունը, անսպառ եռանդը, կործանիչին տիրապետելու բացառիկ վարպետությունն առանձ-նապես մարմնավորվել էին Բուռնազյանի մեջ:

Օդաչու Բուռնազյանը մեկ տարվա ընթացքում կատարել է 250-ից ավելի մարտական թռիչք: Օդային մարտերում խփել է ֆաշիստական 29 ինքնաթիռ:

Հայ ժողովրդի հարազատ զավակ Բուռնազյանը զոհվեց 1943 թվի ապրիլի 14-ին, մարտական պատաս-խանատու առաջադրանք կատարելու ժամանակ:

## 3. ԿԱՊԻՏԱՆ ՍԱՄՍՈՆ ՄԿՐՏՈՒՄՅԱՆ

Սովետական Միության Հերոս կապիտան Սամսոն Մկրտումյանը ծնվել է 1910 թվին, Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղում: Նրան դաստիարակել է Լենին-յան—Ստալինյան կոմերիտմիությունը, բոլշևիկների մեծ պարտիան: Մկրտումյանը Բաքվի նավթահանքե-րի նախկին հորատող է, որը պատերազմի ճակատնե-րում դարձել է աներկյուղ օդաչու: Նա իր փառքը ստեղծեց Կովկասի պաշտպանության օրերին:

Գերմանացիները ճեղքելով հարավային ռազմա-ճակատը, ընդհուպ մոտեցել էին Վլադիկավկազին: Ֆրիցները մագլցում էին Կովկասյան լեռնաշղթայի լեռնանցքները: Տանկերը փորձում էին ճեղքել-անցնել դեպի ռազմա-վրական ճանապարհը:

— Գլուխ չի գա,—ասաց կապիտան Մկրտումյա-նը,— գերմանացիները Կովկասում չեն լինի: Եվ Մկրտումյանն իր էսկադրիլիայի օդաչուների հետ միասին օր ու գիշեր կրակի կարկուտ էր մաղում գեր-մանացիների գլխին:

Հակառակորդը շրջապատել էր երկաթուղային N



կարևորագույն հանգույցը: Մի գորշ մառախլապատ առավոտ էր: Թշնամին հարձակման չէր սպասում, բայց Մկրտումյանի համար ամեն մի եղանակ էլ թռիչքի եղանակ է: Նա նպատակակետի վերևը այն-քան անսպասելի երևաց, որ ֆրիցները հանկարծակիի եկան: Կայծակի պես ռումբերը երկնքից ընկնում էին ճիշտ նպատակակետին: Հօդս ցնդեց հակառակորդի շտաբային ավտոբուսը, այրվեցին մի քանի տանկեր և թնդանոթներ:

Օդաչու Սամսոն Մկրտումյանը իր ռմբակոծու-թյուններով հարյուրավոր գերմանական մեքենաներ է վերածել երկաթե լոմի:

Մկրտումյանը ընտանիքին հատուկ վրեժով է լցված դեպի գերմանական զավթիչները:

## 4. ԿԱՊԻՏԱՆ ՄԻՀՐԱՆ ԲՈՍՏԱՆՋՅԱՆ

Ստալինգրադից մինչև Բալկաններ,— ահա այն պանծալի ուղին, որ մարտերով անցել է հետախույզ Միհրան Բոստանջյանը: Ստալինգրադի դյուցազնա-մարտերում աճեց, արիացավ քաջարի հետախույզ Բոստանջյանը, նա այդտեղ առաջին անգամ վիրավոր-վեց, իր արյունը խառնեց Ստալինգրադի հերոս պաշտպանների արյանը:

Դնեպրի հերոսական անցման ժամանակ Բոստանջ-յանն առաջ էր քաշվել որպես գումարտակի պարտ-կազմակերպիչ: Գարբեցի սպա Բոստանջյանը չտեսն-ված քաջագործություններ կատարեց: Նա Դնեպրի ջրի մեջ կիսով չափ թաղված, հակառակորդի անդա-դար կրակի տակ առաջ էր մղում նավակը: Աջ ափին Բոստանջյանը մարտիկների հետ միասին հե-տախուզության գնաց: Հանդիպելով գերմանացիներին մարտի բռնվեցին. Նրանք ոչնչացրին մի քանի տաս-նյակ հիտլերականի:

Մեկ անգամ հակառակորդի 12 տանկ հետևակի օգնությամբ հարձակվում է գործում մեր մի նեղ հատ-

վածի վրա, որտեղ գտնվում էր պարտկազմակերպիչ Բոստանջյանը: Ոչ մի տանկ առաջ չանցավ: Սովետական ռազմիկները հրկիզեցին 9 տանկ, իսկ մնացածները ետ փախան: Այդ տանկերից մեկը անձամբ խփեց Բոստանջյանը: Նույն օրը շարքից հանվեցին մոտ 600 գերմանական զինվոր ու սպա:

Մի քանի օր չանցած, հայտնի դարձավ, որ լեյտենանտ Բոստանջյանին շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում: Այդ 1944 թվի փետրվարի 22-ին էր: Երջանիկ և հաղթական օր:

## 5. ԱՎԱԳ ԼԵՅՏԵՆԱՆՏ ԱՆԴՐԱՆԻԿ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Ավագ լեյտենանտ Անդրանիկ Մուրադյանը ծնվել է 1911 թվին: ՀամԿ(բ)Պ անդամ է, Կարմիր Բանակի շարքերում է 1941 թվից: Նա Դնեպրի հերոսներից է, առաջինների շարքում է իր վաշտով գետն անցել և աջ ափում պլացդարմ ստեղծել: Միայն երեք ժամվա մարտերի ընթացքում Մուրադյանն իր վաշտով ետ է շպրտել հակառակորդի 20 հակագրոհ: Ծանր գնդացրորդ Սուլիմենկոյի վիրավորվելուց հետո, ավագ լեյտենանտ Մուրադյանը հակառակորդի անդադար կրակի տակ սողալով օգնության է հասնում ռազմիկ ընկերոջը, կապում նրա վերքերը, փոխարինում շարքից դուրս եկած գնդացրորդին և անձամբ ոչնչացնում ավելի քան 50 հիտլերական:

Ցնցող և ահեղ դեպքերը Դնեպրի աջ ափին մեկ օրում չավարտվեցին: Գերմանացիները կատաղած հակագրոհների էին դիմում: Մուրադյանն իր վաշտով ամրանալով պլացդարմում օր ու գիշեր ետ էր մղում թշնամու հակագրոհները: Մուրադյանն աջափնյա Ուկրաինայի համար մղված ճակատամարտերում վիրավորվեց: Մուրադյանին հոսպիտալ տանելու ժամանակ Դնեպրի ափին նրան ողջունում էր բարձրաստիճան մի զինվորական: Դա դիվիզիայի հրամանատար, Սովետական Միության կրկնակի Հերոս Ցեսլինն էր.






Սովետական Միության հերոսներ գնդապետ Լ. ԴԱՐԲԻՆՅԱՆ և գվարդիայի գնդապետ Գ. ԳԱԼՍՏՅԱՆ




Սովետական Միության հերոսներ գվարդիայի փոխգնդապետ Ն. ՍՏԵՓԱՆՅԱՆ և գվարդիայի կապիտան Ս. ՊԵՏՐՈՍՅԱՆ

որը քաջարի Մուրադյանին ճանապարհելիս ասաց.

— Առողջանալուց կրկին վերադարձիր ինձ մոտ, քո հերոսությունները նոր են սկսվում:

Երկար ժամանակ չէր անցել, երբ ամբողջ երկրով մեկ տարածվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի նոյեմբերի 1-ի Հրամանագիրը՝ ավագ լեյտենանտ Անդրանիկ Մուրադյանին Սովետական Միության Հերոսի կոչում շնորհելու մասին:

## 6. ԳՎԱՐԴԻԱՅԻ ՓՈԽԳՆԴԱՊԵՏ ԳԵԴԵՈՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

Գվարդիայի փոխգնդապետ Գեդեոն Միքայելյանը պատերազմից առաջ աշխատում էր որպես Հայկական ՍՍՌ Օսո-Ավիախիմի Կենտխորհրդի նախագահ:

1941 թվին, պատերազմի սկզբերից 20 օր հետո կանչվեց զինվորական ծառայության և նշանակվում ատացյալ կենտրոնական ճակատում: 1942 թվին նա ստացավ փոխգնդապետի կոչում և գործուղվեց Ռազմական ակադեմիա: Ակադեմիան հաջողությամբ ավարտելուց հետո ուղարկվում է Ուկրաինական 2-րդ ռազմաճակատ: Նա մասնակցել է հայրապատ Ուկրաինայի ազատագրմանը՝ հայտնի է որպես Դնեպրի հերոս: Փոխգնդապետը պատմում է.

— 1943 թվի սեպտեմբերին հազիվ 8 կիլոմետր էր մնացել մինչև Դնեպր հասնելը, գվարդիական դիվիզիայի հրամանատարը ինձ կանչեց իր մոտ և ասաց.

— Այս գիշեր քո գնդով պետք է անցնես Դնեպրը և նրա աջ ափին պլացդարմ ստեղծես: Գետն անցնելու համար միջոցներ ինքներդ ստեղծեք:

Փոխգնդապետ Գ. Միքայելյանը մարտական առաջադրանք ստանալով, կարճ ժամանակամիջոցում ձեռք է բերում 4—5 ձկնորսական փոքրիկ նավակ և մի գիշերվա ընթացքում իր գունդը փոխադրում Դնեպրի աջ ափը: Հակառակորդը ուշքի գալով և մեծ



ուժեր կենտրոնացնելով հակագրոհի է անցնում: Միայն հոկտեմբերի 6-ին գերմանացիները 14 անգամ հակագրոհի անցան Միքայելյանի ստորաբաժանման գծերի վրա: Բայց բոլորն էլ ապարդյուն անցան: Հոկտեմբերի կեսերին փոխգնդապետ Միքայելյանն, ընդարձակելով իր պլացդարմը, կապ է հաստատում հարևան զորամասերի հետ: Շատ չանցած փոխգնդապետ Գ. Միքայելյանն ականանետային կրակի տակ դաշտային հեռախոսափողի միջոցով լսեց իր ընկերների շնորհավորանքի խոսքերը և իմացավ, որ նրան շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում:

## 7. ԳՎԱՐԴԻԱՅԻ ԱՎԱԳ ԼԵՅՏԵՆԱՆՏ ՌՈՒԲԵՆ ՀԱԿՈԲՅԱՆ

Գվարդիայի ավագ լեյտենանտ Ռուբեն Հակոբյանը ծնվել է Իջևանի շրջանի Ուզունթալա գյուղում՝ 1912 թվին: Յոթնամյա դպրոցն ավարտելուց հետո, Հակոբյանը սովորում և ավարտում է Երևանի Ավտո-ճանապարհային տեխնիկումը: Երկար ժամանակ աշխատում է Ղափանում: Հայրենական պատերազմի սկզբներից հետո մի քանի ամիս նա ղեկավարում է աշխարհազորայինների պարապմունքները, իսկ 1943 թվի սկզբին մեկնում գործող բանակ: Նա մտնում է 3-րդ Վոլնովախյան փառապանծ դիվիզիան, նշանակվում ականանետայինների վաշտի հրամանատար:

Գնդի հրամանատարն իր մոտ կանչելով ավագ Հակոբյանին մարտական առաջադրանք է տալիս—ականանետայինների հետ միասին գրավել N բնակավայրը, հակառակորդին դուրս մղել Ղրիմ—Խերսոն երկաթուղու վրա գտնվող մեկ հանգույցից: Չորսօրյա կատաղի մարտերից հետո Հակոբյանը զեկուցում է մարտական առաջադրանքի գերազանց կատարման մասին: Կարմիր դրոշը կրկին ծածանվում է Ուկրաինական փոքրիկ քաղաքի վրա:

Հրամանատարությունը գվարդիայի ավագ լեյտե-

նամաս Ռ. Հակոբյանին պարգևատրում է Կարմիր Աստղի շքանշանով:

Հակոբյանի ստորաբաժանումը մասնակցում է Աջափնյա և Ձախափնյա Ուկրաինայի ազատագրմանը, հասնում մինչև Դնեպրի ափերը, իսկ հետագայում մեր Հայրենիքի սահմաններից հեռու:

Գվարդիայի ավագ լեյտենանտ Ռուբեն Հակոբյանը Արմյանսկ քաղաքի գրավման ժամանակ առաջինների շարքում հաղթահարում անցնում է Պերեկոպի ամրությունները:

Հակոբյանը Իշունյան բարձունքների համար մղված մարտում կտրվում է ընկերներից և ընկնում շրջապատման մեջ: Քաջարի հրամանատարը ոչնչացնում է 7 հիտլերականի և միանում հարազատ ընկերներին:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի ապրիլի 14-ի հրամանագրով նա ստացել է Սովետական Միության Հերոսի կոչում: Ներկայումս բուժվում և միաժամանակ աշխատում է Ղափանում որպես դասատու:

## 8. ՍԱԿՐԱՎՈՐ ՋՀԱՆ ԿԱՐԱԽԱՆՅԱՆ

Սակրավոր Ջհան Կարախանյանը ծնվել է 1923 թվին Նոյեմբերյանի շրջանի Կողբ գյուղում: Նա աճել և դաստիարակվել է Լենինյան-Ստալինյան կոմերիտմիության շարքերում: Հայրենական պատերազմի սկզբից հետո Կարախանյանը մեկնում է բանակ, առաջին իսկ օրից ծառայության մտնում 89-րդ Հայկական հրաձգային դիվիզիայում: Ռազմաճակատում՝ Հյուսիսային Կովկասի պաշտպանության օրերին նա շատ անգամ է որպես սակրավոր թափանցել գերմանացիների առաջավոր գիծը, ճանապարհ բացել ականապատված դաշտի միջով և թափանցել հիտլերականների թիկունքը:



Թամանի թերակղզում մղված մարտերի ժամանակ կոմերիտական Կարախանյանը նոր փառք նվաճեց:

Ջհանը մասնակցել է Նովոռոսիյսկի դեսանտային գործողություններին, իր ընկերներով դուրս շպրտել հիտլերականներին շատ ու շատ տներից և ոչնչացրել:

Նովոռոսիյսկում մի երկաթակուռ կամուրջ կար: Գերմանացիները նահանջելով հսկայական չափով պայթուցիկ նյութ էին դրել և լարը միացրել: Ջհանն իր ընկերներով նկատեց, որ լարի ծայրը վառվում է: Նա վայրկենապես զննելով հարյուրավոր սև լարերի ցանցը, ականանետային ուժեղ կրակի տակ գտավ կենտրոնական շնուրը և կտրեց: Կամուրջը պայթելուն 4—5 վայրկյան էր մնացել միայն: Կամրջի տակից նա հանեց 1.000 կիլոգրամ պայթուցիկ նյութ:

Նա իր մարտական գործողությունների ժամանակ անվնաս է դարձրել մոտ 4.500 ական:

Սակրավոր Ջհան Կարախանյանը ակտիվ մասնակցել է նաև Ղրիմի դեսանտային գործողություններին:

Քաջարի մարտիկը զոհվեց Ղրիմում Հայրենիքի համար մղվող մարտերում: Նա թաղված է Հաջի-Մուշկայի քարահանքերում:

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Նախագահությունը Նոյեմբերյանի շրջանի Կողբ գյուղի միջնակարգ դպրոցին պարգևատրել է պատվոգրով Կարախանյանի պես հերոս ռազմիկ դաստիարակելու համար:

## 9. ՍԵՐԺԱՆՏ ՀՈՒՆԱՆ ԱՎԵՏԻՍՅԱՆ

89-րդ Թամանյան կրկնակի շքանշանակիր դիվիզիան միշտ թարմ է պահում քաջարի սերժանտ Հունան Ավետիսյանի հիշատակը: Հունանը ծնվել է Ղափանի շրջանի Ծավ գյուղում: Մինչև պատերազմը աշխատել է որպես կոլխոզի բանվոր: Ծավը կտրիճների օրրանն է: Դեռ 1920 թվին հայտնի դարձավ խիզախ

բոլշևիկ Բագրատ Հարությունյանի անունը: Նրան գիտեին Ադրբեջանում, Զանգեզուրում և ամբողջ Հայաստանում: Հունանը Բագրատի պես խիզախ և քաջարի մարտիկ դարձավ Հայրենական պատերազմի ճակատներում:

Դասակի հրամանատարի տեղակալ Հունան Ավետիսյանի անունը հայտնի դարձավ 1943 թվին Թամանի թերակղզում:

— Չէ, այդ բարձունքը շուտով մերը կլինի,— մեկ անգամ ինքն իրեն ասաց Ավետիսյանը և գնաց վաշտի հրամանատարի գետնափորը: Գետնափորից դուրս եկավ մարտական նոր առաջադրանք ստացած՝ պետք է գրոհեր «Դոլգայա» լեռան վրա գտնվող 147 բարձունքի վրա:

Այդ բարձունքը գերմանացիները խիստ ամրացրել էին: Ինժեներական պաշտպանողական կառուցումները իրար հետ միացած էին խոր և երկար խրամատներով: Առջևի եզրը մի քանի շերտ ականապատված էր և ուներ փշալարերով պատած մի ամբողջ ցանց:

Ավագ սերժանտ Հունան Ավետիսյանը մի անձրևային խավար գիշեր գրոհեց «Դոլգայա» լեռան վրա: Նրան անմիջապես հետևում էին Վասիլ Սաքանյանը, ձեռքի գնդացրորդ Տիգրան Գրիգորյանը, մարտիկ Գրիգոր Բաբայանը, սնայպեր Հրանտ Հարությունյանը, մարտիկ Հայկազ Սաֆարյանը, Զավեն Գևորգյանը և ուրիշներ:

Սովետական կործիները առաջ էին շարժվում, հաղթահարելով բոլոր դժվարությունները: Մի դզոտ խանգարում էր մերոնց առաջխաղացմանը: Ավետիսյանը առաջ նետվելով, սեփական կրծքով փակեց դզոտի հրակնատը և բացականչեց.

— Այլևս այս դզոտը՝ չի գործելու. հրամայում եմ... Առա՛ջ...

Այսպես, նա տվեց իր կյանքը և ապահովեց մերոնց առաջխաղացումը:

Ընկերները Հունանին թաղեցին արժանի կերպով:






Սովետական Միության հերոսներ գվարդիայի փոխգնդապետ Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ և փոխգնդապետ Դ. ՄԱԴՈՅԱՆ




Սովետական Միության հերոսներ մայոր Ս. ԳԱՍՊԱՐՅԱՆ և կապիտան Ս. ՄԿՐՏՈՒՄՅԱՆ

## 10. ԱՎԱԳ ՍԵՐԺԱՆՏ ՍՈՒՐԵՆ ԱՌԱՔԵԼՅԱՆ

Ավագ սերժանտ Սուրեն Առաքելյանը ծնվել է 1914 թվին Գորիսի շրջանի Տաթև գյուղում։ Ռազմաճակատում նա Տաթևացի Կոլյան անունը ստացավ։

Թամանում ավագ սերժանտ Սուրեն Առաքելյանը դասակի փոխհրամանատար էր։ Մի անգամ կատաղի մարտի ժամանակ հրամանատարը շարքից դուրս եկավ։ Ավագ սերժանտը փաթաթեց վիրավորին և սանիտարական մաս ուղարկեց, իսկ ինքը փոխարինեց նրան։

Հակառակորդի դնդացիրը N բարձունքից հանգիստ չէր տալիս։ Խանգարում էր մեր մարտիկների առաջխաղացմանը։ Ավագ սերժանտ Առաքելյանը մի խումբ մարտիկների գլուխն անցած գրոհում էր դնդացիրը շարքից հանելու համար։

— Առա՛ջ, իմ արծիվներ, առա՛ջ, հանուն Հայրենիքի, հանո՛ւն Ստալինի... առա՛ջ...

Առաքելյանն իր ընկերների հետ անընդհատ գրոհում էր առաջ... Գերմանացիների դնդացիրը շարքից դուրս եկավ։ Սկսեց գործել երկրորդը։ Սուրենը վիրավորված է, բայց նորից է շարունակում առաջ նետվել և նռնակներ նետել հիտլերականների դզոտը։ Արյունը հոսում է։ Նա լարելով վերջին ուժերը, դասակակիցներից հանեց կարմիր դրոշը և ամրացրեց բարձունքի գլխին։

Բարձունքը գրավված էր։

Ամբողջ ռազմաճակատում թնդաց այդ սխրագործության լուրը. շուտով ուրախությամբ դիմավորեցին Սուրեն Առաքելյանին Սովետական Միության Հերոսի կոչում շնորհելու լուրը։

Ամեն անգամ, երբ 89-րդ Թամանյան կրկնակի շքանշանակիր դիվիզիայի սևաստոպոլյան գնդերից մեկի վաշտի ավագը ընթերցում է Սուրեն Առաքելյա-



նի անունը, մարտիկները զգաստ դրությամբ բացականչում են.

— Ընկավ հերոսական մահով, Հայրենիքի համար մղվող մարտերում։

Իսկ հեռու Տաթևում դպրոցականները դաստիարակվում են հայրենասիրության ոգով, որպեսզի արժանի լինեն իրենց հայրենակից Սուրեն Առաքելյանին։

## 11. ՄԱՅՈՐ ԱՇՈՏ ԳԱՍՊԱՐՅԱՆ

Հայ ժողովրդի հերոս զավակ օդաչու Աշոտ Գասպարյանը մասնակցել է Ստալինգրադի լեգենդար պաշտպանությանը, եղել է Լենինգրադում և նրա բլոկադայի ծանր օրերին անդադար գրոհել է հիտլերյան զավթիչների վրա։ Գասպարյանը գերմանացիներին ջարդել է Կուբանում, Ուկրաինայում, Բելոռուսիայի, Լատվիայի, Լիտվայի ընդարձակ տարածությունների վրա։

Հայրենական պատերազմի ժամանակաշրջանում մայոր Գասպարյանը կատարել է ավելի քան 400 գիշերային թռիչք դեպի թշնամու խոր թիկունքը, 70 անգամ իջել է պարտիզանների կողմից գրավված տերիտորիաների օդանավակայանում։ Ներկայումս մայոր Գասպարյանի կուրծքին շողշողում են երկու Կարմիր Դրոշի, Կարմիր Աստղի, Հայրենական պատերազմի առաջին աստիճանի, Լենինի շքանշանները, «Հայրենական պատերազմի պարտիզանին» առաջին աստիճանի, Լենինգրադի պաշտպանության համար, Ստալինգրադի պաշտպանության համար, Մոսկվայի պաշտպանության համար և Կովկասի պաշտպանության համար մեդալները։

Անթիվ սխրագործություններ է կատարել անվեհեր օդաչու Գասպարյանը։ Ահա երկու էպիզոդ նրա քաջագործություններից։

...Մութ, ամպամած գիշեր էր, թռչել կարելի էր

միայն 50—100 մետր տարածության վրա, անհրաժեշտ էր անցնել 2.500 կիլոմետր ճանապարհ և զենք հասցնել պարտիզաններին: Մայոր Գասպարյանն այդ պատասխանատու առաջադրանքն ստանալով, օդերևութաբանական ծանր պայմաններում հաղթահարելով հակառակորդի արգելապատնեշները, ժամանակից առաջ կատարեց հրամանատարության խնդիրը:

Բրյանսկում մեկ անգամ գիշերային թռիչների ժամանակ գերմանացիների հարյուրից ավելի լուսարձակներ փորձում էին երկնքում հայտնաբերել Գասպարյանի ինքնաթիռը: Նրանք գործի էին դրել ավելի քան 300 զենիթային հրանոթ: Օդում պայթում էին արկերը: Այդ ժամանակ խիզախ օդաչու Գասպարյանը իր հմուտ գործողություններով մեծ կորուստներ պատճառեց հակառակորդին:

## 12· ՏԱՆԿԻՍՏ ԱՇՈՏ ԱՍՐՅԱՆ

Տանկիստ Աշոտ Ասրյանը ծնվել է Ստեփանավանի շրջանի Վարդաբլուր գյուղում: Հայրենական պատերազմի ժամանակ նրան վիճակվեց կռվել Սովետական Միության ծայրահյուսիսում՝ Պետսամո նավահանգստային քաղաքի մատույցներում: Ասրյանը իր տանկով շատ անգամ է թափանցել հակառակորդի պաշտպանության շրջանը և ոչնչացրել նրա կենդանի ուժն ու տեխնիկան: Նույնիսկ ամենալուրջ մոմենտին նա իրեն չի կորցնում և կարողանում է գնահատել վիճակը: Աշոտ Ասրյանն իր «Տ—34» տանկով անասելի քաջագործություններ է կատարել Պետսամոյի ազատագրման համար մղված մարտերում: Նա գրոհելով հակառակորդի հրետանային մարտկոցների վրա, տանկի թրթուրներով ճզմել է մի քանի թնդանոթ: Կարճատև, բայց կատաղի մարտում ոչնչացրել



է հակառակորդին: Մեկ անգամ, մարտի թեժ պահին Ասրյանի տանկը ցնցվեց, խեղճ քաջարի տանկիստը կորցրեց գիտակցությունը: Նա ուշքի եկավ միայն այն ժամանակ, երբ իր գլխի մազերը խանձվում էին: Աչքերը բացելով, տեսավ, որ տանկը այրվում է: Լարելով իր բոլոր ուժերը, նա դուրս սողաց աշտարակից իր հետ տանելով մեխանիկ վարորդին: Գնդակները սուլում էին նրանց շուրջը: Ասրյանն ու մեխանիկը իրենց սաղավարտներով հակառակորդի անդադար կրակի տակ այնքան ջուր հասցրին, որ հանգցրին հրդեհը: Նրանք նորից մտան տանկ և շարունակեցին մարտը:

Դրանից հետո տանկիստ Ասրյանը ուրիշ սխրագործություններ էլ է կատարել. «երբ տանկերը կռվում էին խաչմերուկի համար, քանի դեռ հետևակը չէր հասել: Տանկի հրամանատար Ասրյանը իր այրվող տանկի կրակը հանգցրեց և շարք մտցրեց» («Պրավդա»):

Գվարդիայի կրտսեր լեյտենանտ Աշոտ Ասրյանը երկրորդ անգամ հրկիզումից փրկելով իր տանկը, ոչնչացրել է գերմանական 4 հրանոթ, մի քանի տասնյակ ավտոմեքենա, 100-ից ավելի գերմանացի և հաղթականորեն մտել Պետսամո նավահանգստային քաղաքը:

## 13· ԿԱՊԻՏԱՆ ՀՄԱՅԱԿ ՂԱԶԱՐՅԱՆ

Կապիտան Հմայակ Ղազարյանը ծնվել է 1907 թվին: Հայրենական պատերազմի ճակատներում նա իր սխրագործություններով պատվավոր տեղ գրավեց հերոսների ընտանիքում: Կապիտան Ղազարյանի համար Ուկրաինան այնքան հարազատ ու թանկ է, ինչպես իր ընտանեկան օջախի պատիվը: Կապիտան Հմայակ Ղազարյանը Դնեպրի հերոսներից է: Նրա գումարտակի մարտիկները մի գիշերում անցել են Դնեպրը և պլացդարմ ստեղծել նրա աջ ափին: Միայն մեկ օրվա կատաղի մարտերում նրա զինվորները ոչն-

չացրել են ավելի քան 80 հիտլերական, գրավել 6 հրանոթ, 2 ավտոմեքենա, մեծ քանակությամբ ռազմական հանդերձանք:

Մի ուրիշ անգամ կապիտան Ղազարյանի ստորաբաժանման ռազմիկները, գրոհելով գերմանացիների դիրքերի վրա, նրանց դուրս են քշում երկաթուղային N կայարանից: Հիտլերականները այդ ժամանակ մարտադաշտում թողնում են 180 դիակ և հրկիզված 2 տանկ:

Կապիտան Հմայակ Ղազարյանը գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող մարտերում ցուցաբերած խիզախության և արիության համար, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի փետրվարի 22-ի Հրամանագրով ստացել է Սովետական Միության Հերոսի կոչում:

## 14. ՏԱՆԿԻՍՏ ԱՐՏԱՇԵՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Երևանի Սպանդարյան փողոցի վրա մի փոքրիկ տուն կա, որտեղ Քրիստափոր Հարությունյանն է բնակվում: Նրա որդին՝ Արտաշեսը, որը ծնվել է 1921 թվին, դարձել է խիզախ զինվոր, արժանացել Սովետական Միության Հերոսի կոչման: Լենինյան—Ստալինյան կոմերիտմիության անդամ Արտաշեսը տանկիստ է: Նա շատ ու շատ անգամ է ճեղքել հակառակորդի պաշտպանությունը և ոչնչացրել հիտլերյան զավթիչներին: Երիտասարդ, քաջարի տանկիստը Ստալինգրադից հասել է մեր երկրի սահմաններից դուրս, ամեն անգամ մի նոր փայլուն հաղթանակ տանելով:

Մի անգամ Արտաշեսը իր տանկով ճեղքում է հակառակորդի խիստ ամրացված պաշտպանությունը և թափանցում հիտլերականների թիկունքը: Գերմանական զինվորներն ու սպաները խուճապի են ենթարկվում և դիրքերը թողած աջ ու ձախ փախչում: Սովետական հետևակայինները, տեսնելով այդ, քաջա-






Սովետական Միության հերոսներ տանկիստ Ս. ԱՍՐՅԱՆ և գնդապետ Հ. ԲԱԲԱՋԱՆՅԱՆ




Սովետական Միության հերոսներ գվարդիայի ավագ լեյտենանտ Ռ. ՀԱԿՈԲՅԱՆ և ավագ լեյտենանտ Ս. ԲՈՒՌՆԱԶՅԱՆ

կանչելով գրոհի են նետվում և գրավում գերմանացիների պաշտպանական բնագծի առաջին շերտը։ Մարտը վերջանալուց հետևակայինները ողջունում են քաջարի տանկիստին այդ օրվա սխրագործության համար։

Երջանիկ մարդ է «Երհացասի» գրասենյակի աշխատող Քրիստափորը, որովհետև նա Արտաշեսի նման հերոս որդի է դաստիարակել։

## 15. ԳՎԱՐԴԻԱՅԻ ԼԵՅՏԵՆԱՆՏ ՎԼԱԴԻՄԻՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

Հայ ժողովրդի անվեհեր զավակ, հրաձգային գումարտակի հրամանատար, գվարդիայի լեյտենանտ Վլադիմիր Հովհաննիսյանը մարտական շատ դրվագներից հաղթանակով էր դուրս եկել։ Հետևակային քաջ հրամանատարը իրեն ցույց է տվել որպես սրընթաց շրջանցումների և հարվածների արտասովոր վարպետ, որը կարողացել է անակնկալ կերպով հարձակվել թշնամու դասավորման վրա, խուճապ ստեղծել գերմանական զինվորների ու սպաների մեջ, ոչնչացնել նրանց, անսպասելի հարվածով և բազմաթիվ հրակետեր ոչնչացնելով, բարեհաջող կերպով, առանց կորուստների իր մարտիկներին դուրս բերել հարվածների տակից։

Անտառային մի կարճատև ընդհարման ժամանակ սովետական 6 մարտիկներ Հովհաննիսյանի հրամանատարությամբ ոչնչացրել են գերմանական 60 զինվոր և 5 սպա։ Թշնամու 38 զինվոր ու սպա ինքը՝ Հովհաննիսյանը անձամբ է ոչնչացրել։ 18 հիտլերական զենքը վայր են դրել և գերի հանձնվել։

Մի ուրիշ մարտում Հովհաննիսյանը 7 գվարդիականների հետ միասին ոչնչացրել է հիտլերյան 73 զինվոր ու սպա և ռազմական այլ ավարի թվում գրավել մեկ սարքին գնդացիր։

Գվարդիայի լեյտենանտ Վլադիմիր Հովհաննիսյանը ծնվել է Ադրբեջանական ՍՍՌ-ում։ ՀամԿ(բ)Պ անդամ է։ Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի շարքերում է 1943 թվից։ Սովետական Միության Հերոսի կոչում է ստացել ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի օգոստոսի 12-ի հրամանագրով՝ Դնեպրն անցնելու ժամանակ գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարում ցուցաբերած արիության և հերոսության համար։



## 16. ԲԺՇԿԱԿԱՆ ԾԱՌԱՅՈՒԹՅԱՆ ԳՎԱՐԴԻԱՅԻ ԼԵՅՏԵՆԱՆՏ ՍԵՐԳԵՅ ԳՐԻԳՈՐՅԱՆ

Թբիլիսիի Մանկավարժական ինստիտուտի նախկին ուսանող Սերգեյ Վարդանի Գրիգորյանը ռազմաճակատում կատարած սխրագործությունների համար արժանացել է Սովետական Միության Հերոսի կոչման։ Բացի դրանից, պարգևատրվել է Կարմիր Աստղի, Հայրենական պատերազմի 2-րդ աստիճանի շքանշաններով և «Արիության համար» մեդալով։ Դրանք նվաճվել են ամեն մի դյուցազնամարտում կատարած մի նոր, անթառամ քաջագործության համար։ Գվարդիայի լեյտենանտ Ս. Գրիգորյանը Դնեպրի աջափնյա պլացդարմում նկատելով, որ հրաձգային վաշտերից մեկի հրամանատարը շարքից դուրս է եկել, շտապ օգնության է հասնում, փաթաթում նրա վերքերը և հրամանատարությունն իր ձեռքը վերցնում։ Այդ ժամանակ տեղեկություն ստանալով, որ գումարտակի հրամանատարը ծանր վիրավորվել է և ընկել շրջապատման մեջ, Գրիգորյանը գտնում է նրան, փաթաթում վերքերը և առնելով ուսերի վրա, հանում շրջապատումից։ Երբ թշնամու արկը պայթում է նրանից մոտ և մահացու վերք պատճառում Գրիգորյանին, խիզախ ռազմիկը բացականչում է.

— Կմեռնեմ, բայց հարազատ հրամանատարիս չեմ թողնի։

Գվարդիայի լեյտենանտ Ս. Գրիգորյանը հայրենասիրական ոգով դաստիարակվել է դպրոցում Լենին-Ստալինյան կուսակցության շարքերում:

## 17. ԳՎԱՐԴԻԱՅԻ ԱՎԱԳ ՍԵՐԺԱՆՏ Ա. ԱՆՏԻՆՅԱՆ

Գվարդիայի ավագ սերժանտ Ավագ Անտինյանը ծնվել է 1918 թվին Կիրովականի շրջանի Համզաչիմանի գյուղում: 1939 թվին նա կանչվել է բանակ և այն օրից մինչև հիմա պաշտպանում է մեր սոցիալիստական Հայրենիքը: Քաջարի ռազմիկ Անտինյանի հրացանը միշտ կրակի տակ է պահել գերմանացիներին: Մի անգամ Անտինյանը հետևում էր հանձնված բնագծին: Նրա ուշադրությունից չէր վրիպում թշնամու ոչ մի շարժում: Հենց որ հիտլերականները բռնկում էին նրա կրակի հատվածը, իր անվրեպ հարվածներով նա ոչնչացնում էր հիտլերականներին: Այդ մարտում Ավագ Անտինյանը ոչնչացրեց գերմանական 4 տանկ:

Գվարդիայի ավագ սերժանտ Անտինյանը հայտնի է որպես հմուտ և քաջարի հրետանավոր: Նրա քաջությունը դեռ մանկությունից դաստիարակել են իր հայրենասեր ծնողները:

Անտինյանը շատ անգամ է հրանոթային դրոհ կազմակերպել գերմանական դիրքերի վրա, կրակի լափեր թափել նրանց խրամատների ու թնդանոթների վրա:

Հարձակողական մարտերից մեկի ժամանակ վիրավորվել է Ավագ Անտինյանը, բայց երկար ժամանակ շարունակել է իր բնագծում մնալ:

Ներկայումս Սովետական Միության Հերոս Ավագ Անտինյանը բուժվում է, որպեսզի կրկին վերադառնա հարազատ զորամաս և անողոք վրեժ լուծի գերմանա-ֆաշիստական զավթիչներից:



## 18. ԱՎԱԳ ՍԵՐԺԱՆՏ ԱՐԱՄԱՅԻՍ ՊՈՂՈՍՅԱՆ

Սովետական Միության Հերոս Արամայիս Պողոսյանը ծնվել է Լենինականից ոչ հեռու գտնվող Բայանդուր գյուղում:

Յոթնամյա դպրոցն ավարտելով հայրենի գյուղում, աշխատանքի է անցնում Լենինականի Տեքստիլ կոմբինատում:

Հայրենական պատերազմի ճակատներում Պողոսյանը քաջի համբավ է նվաճել: Նա Կարմիր Բանակի կադրային զինվոր է: Պատերազմի առաջին իսկ օրերից Պողոսյանն իր ստորաբաժանման մարտիկների հետ միասին մարտեր է մղել ռազմաճակատում:

Արամայիս Պողոսյանը Ստալինգրադի հերոսական էպոպեայի օրերին բազմապատկեց իր և հարազատ ժողովրդի փառքը:

Սովետական Ուկրաինայի և նրա նվիրական քաղաքներից մեկի՝ Խարկովի համար մղված մարտերի ժամանակ Պողոսյանը պարգևատրվել է Հայրենական պատերազմի 2-րդ աստիճանի շքանշանով: Ավագ սերժանտ Արամայիս Պողոսյանը Դնեպրի առաջին անցնողներից մեկն է: Նրա զինվորական պատմության ամենահերոսական էջերից մեկը, դա Դնեպրի աջ ափում պլացդարմ ստեղծելու համար մղված մարտերին ակտիվ մասնակցելն է, որի ժամանակ էլ նա արժանացավ Սովետական Միության Հերոսի կոչման: Այդ նվիրական լուրը երկրով մեկ տարածվեց 1943 թվի դեկտեմբերի 20-ին, երբ կենտրոնական մամուլում հրապարակվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը:

## 19. ԳՆԴԱՊԵՏ ՀԱՄԱԶԱՍՊ ԲԱԲԱՋԱՆՅԱՆ

Ադրբեջանական ՍՍՌ Ջարդախլու գյուղը կտրիճների օրրան է: Այնտեղ է ծնվել և իր մանկությունն անցկացրել բանակի գեներալ Ի. Բաղրամյանը: Ջար-

զարգացումն է տվել և մեծացել ղեկավարությամբ գնդապետ, տանկային N զորամասի հրամանատար Համազասպ Բաբաջանյանի: Նա կարգապահ զինվորական է, մշակել է կռվի իր սեփական մեթոդները, և ջախջախիչ հարվածներ է հասցնում գերմանական զավթիչներին:

Հայրենական պատերազմի առաջին իսկ օրերին Բաբաջանյանն իր տանկային բրիգադայով կատաղի մարտեր էր մղում Վելիկիե Լուկի քաղաքի մոտ: Նա մարտեր է մղել նաև Սմոլենսկ քաղաքի համար: Միայն 1944 թվի մարտ ամսին իր զորամասով առաջ է գնացել 100 կիլոմետր և ազատագրել մեծ քանակությամբ տերիտորիա: Բաբաջանյանի զորամասից մոտ 300 զինվոր և սպա պարգևատրվել են կառավարական շքանշաններով: Բաբաջանյանն ակտիվ մասնակցել է Սովետական Ուկրաինայի ազատագրմանը, առաջինների հետ մտել գերմանական հողը: Կարմիր Բանակի այս տարվա հաղթական հարձակման ժամանակ Բաբաջանյանն իր դիվիզիայով անսահման սխրագործություններ է կատարել և միայն հունվարին չորս անգամ արժանացել Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի շնորհակալությանը:

## 20. ՓՈԽԳՆԴԱՊԵՏ ՂՈՒԿԱՍ ՄԱԴՈՅԱՆ

Փոխգնդապետ Ղուկաս Մադոյանը ծնվել է 1906 թվին, Կաղզվանի շրջանի Բերդ գյուղում, հողագործի ընտանիքում: Շատ վաղ հասակից նա զրկվել է ծնողներից: 1917 թվին Ղուկասը Թիֆլիսում չարչիություն էր անում: Մադոյանը պատանեկության տարիներից մտնում է զինվորական ծառայության:

Հայրենական պատերազմի առաջին իսկ օրից Մադոյանը Հայրենիքի կոչով մեկնում է ռազմաճակատ, մարտեր մղում Սովետական Ուկրաինայում՝ Կիևի, Պոլտավայի և Դոնբասի համար: Ստալինգրադի պաշ-






Սովետական Միության հերոսներ կապիտան Մ. ԲՈՍՏԱՆՋՅԱՆ և լեյտենանտ Խ. ՄԵԼԻՔՅԱՆ




Սովետական Միության հերոսներ սակրավոր Զ. ԿԱՐԱԽԱՆՅԱՆ և գվարդիայի լեյտենանտ Վ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

ցավնամարտի ժամանակ նա օր ու գիշեր քուն ու դադար չուներ: Կարմիր Բանակի 1943 թվի ամառային հարձակման ժամանակ Մաղոյանին է հանձնվում 17 տանկեր, բայց համերաշխ ապրումթյունների պակասներից կազմված առանձին մի դասակի հրամանատարություն: Նրա քաջարի տանկիստները իրենց հրամանատարի ղեկավարությամբ աչքի են ընկնում և նվաճում 28-րդ բանակի փոխանցիկ Կարմիր Դրոշը:

Ստալինգրադից հետո Մաղոյանը իր դասակով մասնակցել է Կալմիկիայի քաղաքների և ստանիցաների ազատագրմանը: Այնուհետև անասելի սխրագործություն է կատարել Ռոստովի (Դոնի վրա) երկաթուղային կայարանի համար մղված թեժ մարտում: Գերմանական ավելի քան 200 ավտոմատավորներ 7 տանկի օգնությամբ հարձակվում են Մաղոյանի դասակի վրա: Մեր քաջարի տանկիստները ոչնչացնում են 130 հիտլերական և մի քանի տանկ: Հաջորդ օրը նրանք նոր են մղում թշնամու 20 հակագրոհ, հրկիզում 3 տանկ, և ոչնչացնում ավելի քան 100 հիտլերյան զավթիչ: Վեց օրվա ընթացքում Մաղոյանն իր զորամասով 100 անգամ գրոհի ենթարկվեց, բայց միշտ էլ անսասան մնաց:

Մաղոյանն առաջինն է մտել Ռոստով և պաշտպանել այն: Նա Ռոստովի հերոսներից է:

Մաղոյանը զինվորական Ակադեմիան ավարտել է և նորից վերադարձել է ռազմաճակատ: Նա իր սխրագործությունների համար արժանացել է Սովետական Միության Հերոսի կոչման և Ակադեմիայի պետի կողմից պարգևատրվել է «Խիզախության համար» մեդալով:

## 21. ԼԵՅՏԵՆԱՆՏ ՍԵՐԳԵՅ ՕՀԱՆՅԱՆ

Լեյտենանտ Սերգեյ Օհանյանը ծնվել է 1921 թվին Թբիլիսիում: Նրա հայր Մամբրեն Թբիլիսի էր եկել Իգդիրից: 1928 թվին պատանի Սերգեյը մտնում



է դպրոց: Դպրոցում նա աչքի է ընկնում իր արտառոց ընդունակություններով և ավարտում է գերազանց գնահատականներով: 1939 թվին Ս. Օհանյանը մտնում է Լենինյան—Ստալինյան կոմերիտմիության շարքերը: Մեկ տարի հետո նա գնում է և մտնում Թբիլիսիի հրետանային դպրոցը: Հայրենական պատերազմը սկսվելուց մի քանի օր հետո Օհանյանն ավարտում է հրետանային դպրոցը և մտնում Կարմիր Բանակի շարքերը:

Հայրենական պատերազմի ճակատներում Օհանյանը աչքի է ընկնում որպես քաջարի հրետանավոր և սպա: Նա իր մարտկոցով ճակատամարտ է մղում գերմանական զավթիչների դեմ և միշտ էլ հաղթանակով դուրս գալիս: Օհանյանի մարտկոցում կային Սովետական Միության բազմազգ ժողովրդի զավակներ: Նրանք 1942 թվի ամռանը Ռոստով քաղաքից արևմուտք մեծ ճակատամարտ տվին գերմանական 50 տանկերի դեմ: Սովետական ռազմիկները հավատարիմ մնալով իրենց երդմանը, թույլ չտվին, որ թշնամու տանկերը ճեղքեն մեր թիկունքը և առաջ անցնեն: Օհանյանի մարտկոցի դիպուկ կրակից բոցավառվեցին գերմանացիների տանկերը: Մեր 17 հրետանավոր ռազմիկները հերոսաբար ընկան անհավասար մարտում:

Հայրենիքը բարձր գնահատելով լեյտենանտ Օհանյանի սխրագործությունը, նրան և իր մարտկոցի 16 մարտիկներին մահից հետո շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում:

## 22. ԼԵՅՏԵՆԱՆՏ ԵՐՎԱՆԴ ԳԱՐԱՆՅԱՆ

Երվանդ Գարանյանը ծնվել է Վրացական ՍՍՌ Գագրի շրջանում: Նա հինգ տարի աշխատել է որպես «Ախալի Ցխովրեբա» կոլխոզի նախագահ:

Հայրենական պատերազմի ժամանակ Երվանդ Գարանյանը մեկնելով ռազմաճակատ, աչքի է ընկել

որպես խիզախ հրետանավոր: Նա իր հակատանկային հրանոթով մինչև էլ ոչնչացրել է գերմանացիների ամրությունները, մեծ կորուստներ պատճառել նրա կենդանի ուժին և տեխնիկային: Մեկ անգամ Գարանյանն իր ընկերներով հրանոթները թշնամու ուժեղ կրակի տակ փոխադրում է Ն. գյուղը, հակառակորդից 200 մետր հեռավորության վրա, ուղիղ նշանառությամբ ոչնչացնում 9 կրակային կետ և ճանապարհ հարթում հարձակվող հետևակայինների համար:

Ստալինգրադի ճակատամարտում ցուցաբերած սխրագործությունների համար Գարանյանը պարգևատրվել է Կարմիր Աստղի շքանշանով և «Կովկասի պաշտպանության համար» մեդալով:

Դնեպր գետն անցնելու համար Կարմիր Բանակի անձնվեր զինվորների, սպաների, սերժանտների և մարտիկների շարքում իր պատվավոր տեղն ունի Գարանյանը: Աջափնյա Ուկրաինայում մղված մարտերում նա հերոսի համբավ է նվաճել:

Երբ հայտնի դարձավ, որ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հունվարի 15-ի Հրամանագրով Երվանդ Գարանյանին շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում, քաջարի սպան գրեց.

«Ես անսահման շնորհակալություն եմ հայտնում Սովետական Կառավարությանը, բոլշևիկյան պարտիային, ընկեր Ստալինին իմ մարտական սխրագործությունները բարձր գնահատելու համար: Երդվում եմ կրկնապատիկ ուժով, առանց խնայելու իմ կյանքըն ու արյունը, ջախջախել գերմանա-ֆաշիստական զավթիչներին մեր լիակատար հաղթանակի համար»:



## 23. ԳՎԱՐԴԻԱՅԻ ԳՆԴԱՊԵՏ ԼԵՎՈՆ ԴԱՐԲԻՆՅԱՆ

Գվարդիայի գնդապետ Լևոն Հովհաննեսի Դարբինյանը ծնվել է 1903 թվին: Կարմիր Բանակի շարքերն է մտել 1923 թվին: Կադրային զինվորականը տարիներ շարունակ սովորել և տիրապետել է հրետանային բարդ տեխնիկային:

Հայրենական պատերազմի սկզբից հենց Դարբինյանն իր հրետանավորների հետ միասին մարտն է մղում գերմանական զավթիչների դեմ: Միայն պատերազմի առաջին իսկ տարվա ընթացքում նա երեք անգամ պարգևատրվում է կառավարական շքանշաններով, իսկ հետագա գործողությունների ժամանակ ցուցաբերած հերոսության և արիության համար, ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1944 թվի հունվարի 10-ի Հրամանագրով տրվում է Սովետական Միության Հերոսի կոչում:

Գվարդիայի գնդապետ Դարբինյանը հայտնի է շատ քաջագործություններով:

— Մի անգամ առավոտ յան էր, —պատմում է Լ. Բորոզդինը,— ձյունը ծածկել էր ճանապարհներն ու խրամատները: Գունդը թեև նոր էր ավարտել 60 կիլոմետր տարածության երթը, Դարբինյանը որոշում է հանկարծակի գրոհել հակառակորդի դիրքերի վրա:

Նա իր մոտ կանչեց հետախույզներին խնդիր տվեց.

— Առանց աղմուկի վերցնել գերմանական պահակախումբը, անհապաղ գործել համարձակ:

Հետախույզները մարտական առաջադրանքը գերազանց կատարեցին: Գունդը հարձակման անցավ: Մարտի թեժ պահին գրոհի գնացին նաև ավտոմատավորները: Ավագ Կրասնոպոլսկին իր գնդացրի մի քանի կրակահերթով ոչնչացրեց 13 ֆաշիստ: Ավագ լեյտենանտ Բարխաշվիլին երեք կրակահերթով շարքից հանեց թշնամու հրանոթը, որը խիստ խանգարում էր մերոնց գործողություններին: Մարտը ավարտվեց Դար-

բինդանի և նրա մարտիկների հաղթանակով: N բնակավայրը ազատագրվեց հիտլերականներից:

Պատերազմի հրի ու բոցերի մեջ արիացավ Լևոն Դարբինյանը, նրա անունը և փառքը տարածվեց ռազմաճակատում և նրանից շատ հեռու:

Հայ ժողովուրդը մեծ երախտագիտությամբ է հիշում իր արժանավոր զավակներից մեկի՝ Լևոն Դարբինյանի նվիրական անունը:

## 24. ԿԱՊԻՏԱՆ ԳՐԻԳՈՐ ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

Կապիտան Գրիգոր Հայրապետյանը ծնվել է 1909 թվին: Նա սովորել և ավարտել է Ս. Սպանդարյանի անվան Երևանի միջնակարգ դպրոցը: Ի պատիվ հայրենասեր և խիզախ Հայրապետյանի այդ դպրոցը պարգևատրվել է Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Պատվոգրով:

Կապիտան Գ. Հայրապետյանը պանծալի Կարմիր Բանակի շարքերն է մտել 1933 թվին ու մինչև այսօր էլ ծառայում է, որպես ռազմիկ: Նրա անունը առաջին անգամ հայտնի դարձավ 1939—1940 թ. թ. սպիտակ-ֆինների դեմ մղվող պատերազմի ժամանակ: Հայրապետյանն այդ ժամանակ հաղթահարելով բոլոր դժվարությունները ու արգելքները, մասնակցել է «Մաններհայմի գծի» ճեղքմանը: Ռազմիկ Գ. Հայրապետյանի կամքն ավելի ուժեղ դուրս եկավ, քան թե «Մաններհայմի գիծը»: Դրանից հետո Հայրապետյանը ուրիշ քաջագործություններ էլ է կատարել, որի համար արժանացել է Սովետական Միության Հերոսի կոչման:

Նրա պարգևատրման լուրը հավասարապես ուրախություն է պատճառել Սովետական Միության բոլոր ժողովուրդներին: Հանձինս Հայրապետյանի հայ ժողովուրդը Սովետական Միության հերոսների առաջին համաստեղության մեջ իր բաժինն ունեցավ:

Լենին-Ստալինյան կոմերիտմիության սան Գ. Հայ-



րապետյան իր հարուստ փորձը վարպետորեն է օգտագործում Հայրենական պատերազմի ճակատներում: Նա եղել է գրեթե մեր բոլոր ռազմաճակատներում և իր գումարտակով միշտ էլ ջախջախել է գերմանական զավթիչներին:

Կապիտան Գ. Հայրապետյանը ներկայումս գտնվում է 409-րդ Վորոշիլովգրադյան դիվիզիայում, պարգևատրվել է Կարմիր Դրոշի, Կարմիր Աստղի շքանշաններով և «Կովկասի պաշտպանության համար» մեդալով:

## 25. ԳՎԱՐԴԻԱՅԻ ԳՆԴԱՊԵՏ ԳՐԻԳՈՐ ԳԱԼՍՏՅԱՆ

Գվարդիայի գնդապետ Գրիգոր Շահումի Գալստյանը ծնվել է 1908 թվին: Նա իր ուրույն և հետաքրքիր տեղն ունի մեր ժողովրդի ռազմիկ զավակների շրջանում: Ճիշտ է մեր ձեռքի տակ ներկայումս չկան համապատասխան փաստեր գվարդիայի գնդապետ Գալստյանի և նրա հրամանատարությամբ գործող զորամասի մարտիկների, սերժանտների և սպաների կատարած մարտական սխրագործությունների մասին, բայց քաջարի գնդապետի կրծքին շողշողացող Լենինի երկու, Կարմիր Աստղի շքանշանները և Սովետական Միության Հերոսի ոսկե աստղը վկայում են, թե ինչպիսի ռազմիկ է Գալստյանը:

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1943 թվի նոյեմբերի 4-ի հրամանագրով, գվարդիայի գնդապետ Գրիգոր Գալստյանին շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում:

## 26. ԳՎԱՐԴԻԱՅԻ ԿԱՊԻՏԱՆ ՍՈՒՐԵՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ

Գվարդիայի կապիտան Սուրեն Գրիգորի Պետրոսյանը ծնվել է 1910 թվին: ՀամԿ(բ)Պ անդամ է: Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակում է 1930

թվից։ Գվարդիայի կապիտան Պետրոսյանի քաջագործությունների մասին գիտեն Հայաստանում, հայրենի գյուղում, ռազմաճակատում։ Նա համեստ և իր գործին գիտակ զինվորական է, լավ է տիրապետում ժամանակակից պատերազմի արվեստին։ Գվարդիայի կապիտան Պետրոսյանը հայտնի է որպես խիզախ թեվանցումների հեղինակ և հիտլերյան զավթիչներին ջախջախող սպա։ Նա իր քաջագործությունների համար պարգևատրվել է Կարմիր Դրոշի, Կարմիր Աստղի շքանշաններով և մեդալներով։

Կարմիր Բանակի 1944 թվի հարձակողական մարտերում իր արժանավոր տեղն ունի գվարդիայի կապիտան Պետրոսյանը․ Նա իր զորամասով առաջ է շարժվել հարյուրավոր կիլոմետրեր, մարտական գործողությունների ընթացքում ոչնչացնելով հազարավոր գերմանացի։

Գվարդիայի կապիտան Սուրեն Պետրոսյանը գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող մարտերում ցուցաբերած արիության և հերոսության համար. ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով ստացել է Սովետական Միության Հերոսի կոչում։

Այդ մեծ երջանկություն է քաջարի կապիտանի, նրա ծնողների և հայրապատ ժողովրդի համար։

## 27. ԼԵՅՏԵՆԱՆՏ ԽԱՉԱՏՈՒՐ ՄԵԼԻՔՅԱՆ

Խաչատուր Մելիքյանը ծնվել է 1911 թվին, Համ. Կ(բ)Պ անդամ է։ Կարմիր Բանակի շարքերումն է 1930 թվից։ Նրա անունը հռչակվել է Ուկրաինայի ազատագրության համար մղվող մարտերում։ Այդ ժամանակ նա մի փոքր ստորաբաժանման հրամանատար էր, իսկ կարճ ժամանակից հետո իր անձնական սխրագործությունների համար առաջ քաշվեց որպես N ստորաբաժանման հրամանատար։ Գնդի հրամանատարության հա-







Սովետական Միության Հերոսներ գվարդիայի լեյտենանտ Ե. ԳԱՐԱՆՅԱՆ և գվարդիայի ավագ սերժանտ Ս. ԱՆՏԻՆՅԱՆ





Սովետական Միության Հերոսներ կապիտան Գ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ և լեյտենանտ Ս. ՕՀԱՆՅԱՆ

մար սովորական երևույթ է դարձել մարտական ծանր խնդիրների լուծումը վստահել Մելիքյանին։

«Կարմիր Բանակի Պրոպագանդիստ և Ագիտատոր» ամսագրի 1943 թվի առաջին համարում հետաքրքիր նյութեր են տպագրված հայ ժողովրդի արժանավոր զավակ Մելիքյանի և նրա ստորաբաժանման հերոսական գործերի մասին։

Մարտեր էին մղվում Նիժնայա Սիրովատկա բնակավայրի համար։ Հակառակորդը գերակշռություն ստեղծելով՝ ձգտում էր թափանցել մեր դիրքերը։ Մելիքյանը մի քանի հանդուգն հարձակումով մեծ կորուստներ պատճառեց թշնամուն։ Հակառակորդը այնքան ուժասպառ եղավ, որ հրաժարվեց իր մտադրությունից։ Նիժնայա Սիրովատկա բնակավայրի համար մղված մարտը միանգամից հռչակ ստեղծեց լեյտենանտ Մելիքյանի համար։

Լեյտենանտ Մելիքյանը մի ուրիշ անգամ Պրոխորովկա գյուղում մղված մարտի ժամանակ ցուցաբերեց ռազմական վարպետություն և խիզախություն։ Թշնամու համար աննկատելի կերպով թափանցեց Պրոխորովկա գյուղը։ Կարմիր ռազմիկները հետևելով հարազատ հրամանատարին կռվում էին բացառիկ խիզախությամբ։ Լեյտենանտ Մելիքյանը այդ օրը հրամանատարության առաջադրանքը կատարեց գերազանց։

Մելիքյանը գիշերային մարտերի և թևանցումների վարպետ էր։ Նա գիտեր գնահատել վայրկյանը, աքցանի մեջ առնել գերմանական զորամասերին և ոչնչացնել։

Մարտական հարուստ ուղի անցած Մելիքյանն իր ստորաբաժանումով աչքի է ընկել շատ անգամ։ Հայրենիքը բարձր է գնահատել լեյտենանտ Խաչատուր Մելիքյանի սխրագործությունները։ ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով լեյտենանտ Մելիքյանին շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում։



## 28. ԿԱՊԻՏԱՆ ԳԱՐԵԳԻՆ ԲԱԼԱՅԱՆ

Կապիտան Գարեգին Բալայանը ծնվել է 1912 թվին։

Հայրենական պատերազմի ճակատներում աչքի է ընկել որպես խիզախ և համարձակ ռազմիկ, նրա գումարտակը անցել է փառավոր ուղի։ Կապիտան Բալայանի և նրա մարտիկների քաջագործությունները բազմապատկվեցին Դնեպրի համար մղված մարտերում։ Հաղթական մարտերից հետո, մեր զորամասերը հասան Դնեպրին։ Այդ 1943 թվի սեպտեմբերին էր։ Գերմանացիները ձգտում էին օգտագործել իրենց նպաստավոր դիրքերը և թույլ չտալ սովետական զորամասերին առաջ անցնելու։ Մերոնք կարճատև նախապատրաստությունից հետո ձեռնարկեցին Դնեպրի անցմանը։ Դնեպրի առաջին անցնողների մեջ էր կապիտան Բալայանն իր գումարտակով։ Գերմանացիները կրակե կարկուտ էին թափում Դնեպրի աջ ափում պլացդարմ գրաված մեր զորքերի դիրքերի վրա։ Հողը վառվում էր։

Գեներալը ռադիոկապի միջոցով ղեկավարում էր Կապիտան Բալայանի գումարտակի գործողությունները։ Ավտոմատավորներ Վասյա Լևինը և Ալեքսանդր Մյասնիկովը այդ օրերին գումարտակի աչքն էին։ Գերազանց էին գործում հետախույզները։ Բալայանի գումարտակը Դնեպրի աջ ափին համառ մարտեր էր մղում և մեկ բնակավայր մյուսի հետևից ազատագրում։ Բալայանի մարտիկներն իրենց քաջարի հրամանատարի գլխավորությամբ Մ. գյուղի համար մղված փողոցային գոտեմարտում ոչնչացրել են հազարավոր հիտլերական։

Դնեպրի աջափնյա պլացդարմում Բալայանի գումարտակը անհավասար մարտեր էր մղում գերմանական տանկերի, հրետանային մարտկոցների դեմ։ Թեժ ճակատամարտերից մեկում ծանր վիրավորվեց Բալայանը։ Հարազատ հրամանատարի արյան համար

վրեժ առան մեր քաջարի մարտիկները։ Նրանք մինչև այսօր էլ, Դնեպրից այն կողմ, սովետական հողից դուրս կատաղի մարտերում ոչնչացնում են գերմանական զավթիչներին և հիշում կապիտան Բալայանի խոսքերը.

— Առաջ ընկերներ, հանո՛ւն Հայրենիքի, հանո՛ւն մեր արևային Հայաստանի, հանո՛ւն մեր հարազատների պատվի և ազատության։

## 29. ՄԱՅՈՐ ԳԵՎՈՐԳ ՀԱԿՈԲՅԱՆ

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղվող մարտերում հրամանատարության առաջադրանքները օրինակելիորեն կատարելու և այդ ժամանակ խիզախություն և հերոսություն ցուցաբերելու համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի 1944 թվի հուլիսի 3-ի Հրամանագրով մայոր Գրիգոր Թամրազի Հակոբյանին շնորհվել է Սովետական Միության Հերոսի կոչում։

Մարտական հարուստ ուղի է անցել Հակոբյանը։ Նրա կյանքը լի է սխրագործություններով։ Ահա մի էպիզոդ այդ սխրագործություններից.

... Մանր մարտերից հետո մայոր Հակոբյանի գումարտակը դուրս եկավ ծովախորշ։ Մայորը հեռադիտակով դիտում էր Խերսոն քաղաքը։

— Վաղը Խերսոնը մերը կլինի,— ասաց մայորը։

Ամբողջ օր գումարտակը մարտական նախապատրաստություն էր տեսնում։ Ռազմիկները ավելացնում էին իրենց նռնակների, փամփուշտների թիվը։ Մայորը դեսանտի պատրաստ լինելու մասին հրաման տվեց։ Նշանակված ժամին որոտացին սովետական մարտկոցները։ Հրետանային կրակի պաշտպանության տակ, մայոր Հակոբյանի ստորաբաժանման դեսանտայինները դուրս եկան ափ։ Առջևից սողալով առաջ էին գնում սակրավորները։ Նրանք տեղատարափ կրակի տակ հանում էին դետանում թաղված ականները և անվնաս դարձնում, կտրատում էին փշալարերը։ Չորս



ժամ տևող կատաղի մարտը վերջացավ մերոնց հաղթանակով։ Ավտոմատավորների վաշտը թափանցեց քաղաքը։ Սակրավորները ճանապարհ էին բացում հետևակի համար։ Մայոր Գ. Հակոբյանի մարտիկները փողոցային մարտեր էին մղում և ոչնչացնում հիտլերականներին։ Մերոնք գրավում էին տուն-տան հետևից։ Փողոցային մարտերի ժամանակ Հակոբյանը անձամբ ոչնչացրեց 9 ֆրից։

Խերսոնը գրավված է։ Կարմիր դրոշը նորից է ծածանվում քաղաքի վրա։ Սովետական ռազմիկները դրկախառնվում են տեղական բնակչության հետ։

Հայրենիքը բարձր գնահատելով մայոր Գևորգ Հակոբյանի սխրագործությունները նրան շնորհել է Սովետական Միության Հերոսի կոչում։

## 30. ԳՎԱՐԴԻԱՅԻ ՍԵՐԺԱՆՏ ԼԻՊԱՐԻՏ ԻՍՐԱՅԵԼՅԱՆ

Զանգեզուրի լեռները ոչ միայն արծիվի բներ են, այլ նաև կորյունների օրրան։ Սիսիանի շրջանի Բռնակոթ գյուղումն է ծնվել Սովետական Միության Հերոս, գվարդիայի սերժանտ Լիպարիտ Իսրայելյանը։ Վաղ մանկությունից Լիպարիտը վարժվել է դժվարությունները հաղթահարել. իր հարազատ ծնողներից և համագյուղացիներից ժառանգել է խիզախություն և արիություն։ Լիպարիտը գյուղի միջնակարգ դպրոցումն է սովորել։ Հայրենական պատերազմի ճակատներում նա բարձր պահեց զանգեզուրցիների պատիվը և իր սխրագործությունների համար արժանացավ Սովետական Միության Հերոսի կոչման։

***

Մեծ է Սովետական Միության Հերոսների ընտանիքը։ Նրանց պայծառ համաստեղության շարքում իրենց լավագույն տեղն ունեն հայ ժողովրդի քաջարի զավակները։ Այս հոդվածով հնարավոր չէ բոլոր հայ հերոսների կյանքի և մարտական սխրագործությունների մասին պատմել։ Բացի վերևում հիշատակված

հերոսներից, սովետական ժողովուրդը մեծ երախտագիտությամբ և նվիրական սիրով է արտասանում Սովետական Միության հայ հերոսներ Գուրգեն Արզումանյանի, Սուրեն Ասլամազյանի, Սոկրատ Գալստյանի, Երեմ Դանիելյանի, Արմեն Հայրյանի, Միխայիլ Հարությունյանի, Լևոն Մարգուլյանի, Անդրանիկ Մելքոնյանի, Իվան Շահումյանի, Լազր Չապչախյանի, Վասիլ Սարգսյանի, Արամայիս Սարգսյանի, Ֆեոդոր Սարգսյանի, Սիմոն Ղազարյանի, Հմայակ Ղազարյանի, Իսահակ Մանասյանի, Կարապետ Սիմոնյանի, Սուրեն Գասպարյանի, Ռուբեն Բաղիրովի անունները, որոնք իրենց սխրագործություններով նոր ոսկե էջ են գրել Հայրենական մեծ պատերազմի տարեգրության մեջ: Ժողովուրդը պարծենում է իր հերոս որդիներով:

ԽԻԿԱՐ ԲԱՐՍԵՂՅԱՆ

Պատասխանատու խմբագիր՝ Ս. ԱՐԵՇՅԱՆ

Պատվեր № 154. Տիրաժ 5.000 ՎՖ 00263

Հայկական ՍՍՌ ԺԿՍ-ին կից Թերթերի և ամսագրերի տպարան, Երևան

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ